ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

# Հայաստանով լի հայեր

Ժամփաներում կորստյան
Լոկ մի հույս ենք փայփայել՝
«Հայերով լի Հայաստան,
Հայաստանով լի հայեր...»:
Խոցված սիրտ էր,
Ավեր տուն,
Հատված այգի,
Լքված վանք...
Նույնիսկ երկինքն էր տնքում
Երկրի վրա հնավանդ:
Ու հավատը երբեմն
Պրկում պատերը սրտի,
Չէր թողնում, որ հանդուրժեն
Կամքը սրի ու ստի...
Գիտեր, որ կյանքը գալիք
Ծլարձակում է հողից.
Ուզում ես հո՞ղ ունենալ՝
Հողը արյամբ քո ցողիր...
Գիտեր, պիտի ամեն պահ
Իր խորհրդին հետևեն,
Թե որ ուզում են ապրել,
Առավել ևս՝ տևել...
Թե ուզում են իրենց մեջ
Պայծառ գալիքը խոսի,
Պիտի մի կերպ ազատվեն
Փուչ հոգսերի քաոսից...
Մեկ է՝ մանուկ, թե ավագ,
Մեկ է՝ խելառ, թե խելոք,
Ո՞վ կարող է երջանիկ
Լինել վաղն իր մխիթարելով,
Ո՞վ կարող է կյանքը իր
Դարձնել հիացք ու հաճույք...
Նման մարդիկ գուցե կան,
Նման ազգ չեմ ճանաչում:
Իսկ թե եղել են ազգեր,
Իսկ թե եղել են ցեղեր,
Նրանց մասին են ասում՝
Եղել են ու չեն եղել:
Գուցե հենց այդ բնազդով,
Համոզմունքով գուցե այդ,
Աշխարհի մեջ ամենուր,
Ամեն ծագում ապրող հայ՝
Փարված է այն պատգամին,
Փափագին այն ալեհեր.
«Հայերով լի Հայաստան,
Հայաստանով լի հայեր...»:

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ՀՐԱՉՅԱ ՄԵԼՔՈՒՄՅԱՆ

# Իմ անմոռանալի, առաջին և վերջին պիկնիկը

Նկարը՝ ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Իմ աշխարհայացքն առաջին անգամ ենթարկվեց փոփոխության, երբ ես երկրորդ անգամ մնացի հինգերորդ դասարանում։ Ճիշտ է, այդ կապակցությամբ հայրիկիս դաստիարակչական մեթոդները բուռն վերելք ապրեցին, բայց դրանք ոչինչ էին իմ ստացած բարոյական դասի համեմատությամբ, և ես անազնիվ դարձա։ Այո, այո, դժբախտաբար համոզվեցի, որ ազնիվ մնալով անհնար է փոխադրվել հաջորդ դասարան։

Օրինակ՝ պետք է շարադրություն գրեինք կիրակնօրյա հանգստի մասին։ Միանգամից ասեմ, որ ստացա ամենացածր գնահատականը, բայց ոչ թե ծուլացել էի գրել, ինչպես շատ հաճախ, այլ որպես ազնիվ մարդ՝ ամեն ինչի մասին գրել էի այնպես, ինչպես իրականում եղել էր, և ոչ թե զբաղվել էի ստախոսությամբ, ինչպես ուրիշները։ Պատկերացրեք խնդրեմ, ըստ նրանց շարադրությունների՝ նրանք ամեն կիրակի դուրս են գալիս շրջագայության։ Հեծանիվներով ու գնացքներով, մեքենաներով և ինքնաթիռներով նրանք եղել են Հայաստանի և Միության բոլոր գեղատեսիլ անկյուններում։ Լուսավորության մինիստրի փոխարեն ես նրանց կզրկեի ամառային արձակուրդներից։

Իսկ ես մեկնել եմ այսպես ասած պիկնիկի՝ միայն մեկ անգամ և այն էլ ամառային արձակուրդների ընթացքում։ Անցյալ տարի, հուլիսի 13-ին, ժամը 10-ին, երբ մենք պատրաստվում էինք նախաճաշել և երբ ես արդեն պատրաստվում էի վերցնել ամենամեծ կոտլետը, հանկարծ ավտոմեքենայի ազդանշանի ձայն լսեցի։ Իհարկե, հայրիկն ու մայրիկն էլ լսեցին, բայց քանի որ նրանք ոչինչ չեն հասկանում ավտոմեքենաների ազդանշաններից, ապա նրանց ծամողական և մարսողական ֆունկցիաները չխանգարվեցին։ Իսկ իմ պատառաքաղը օդում մնաց, որովհետև իմ արտակարգ լսողությամբ ես ճանաչում էի մեր թաղի բոլոր ավտոմեքենաների ազդանշանները, և նույնիսկ՝ հացի, մթերքների, կաթնամթերքների, մսեղենի, ջրի, աղբատար մեքենաներինը նույնպես։ Փեփրոնին ազդանշանող մեքենայինը՝ նույնպես, հերթապահ միլիցիոներինը՝ նույնպես... Իսկ սա բոլորովին անծանոթ էր ինձ, ահա թե ինչու իմ պատառաքաղը մնաց օդում։ Ես նետվեցի դեպի պատուհանը։

Մեր բակի հենց կենտրոնում Կեսարի նման կանգնել էր իմ հորեղբայր Կառլենը, մի ձեռքը տրամադրած յուր կնոջը, իսկ մյուսը՝ կարմիր ավ-տո-մե-քե-նային։

Ղեկի մոտ նստած հորեղբորորդիս, աչքերը դեպի մեր պատուհանը չռած, ամբողջ մարմնով ընկել էր ազդանշանի լծակի վրա։ Այդ տեսարանը այն տպավորությունը թողեց վրաս, ինչ պապիկիս թաղումը։

Պատառաքաղը ձեռքիս, աննորմալ տղայի մասին հորս փնթփնթոցը և մորս ակտիվ ճիչը հաղթահարելով, ես նետվեցի բակ։ Առաջին հարկի աստիճանների վրա հազիվ բարևեցի հորեղբորս և նրա կնոջը, իսկ հորեղբորորդիս, պարզ է՝ քիթը ցցած սպասում էր ինձ ավտոմեքենայի մոտ։ Ես ստիպված էի բավարարվել մեքենայի շուրջը պտտվելով, քանի որ հորեղբայրս փակել էր բոլոր դռները։

— Իսկ գիտե՞ս քանի ձիաուժի է հավասար շարժիչի հզորությունը,— լեզուն ծպացնելով ասաց հորեղբորորդիս։

Ավտոմեքենայի փայլին անհամապատասխան էին նրա գիտելիքները։

— Իհարկե գիտեմ, այ մեքենա, մի տասը ձիով ընկնես ետևից՝ հազիվ թե հասնես։

— Ի՞նչ,— քթի տակ մեծավարի ժըպտաց նա,— 40 ձիաուժ։

Դա արդեն չափից դուրս էր։

— Մի փչիր։

— Չես հավատում՝ հայրիկիս հարցրու։

— Ես հայրիկներից հարցնելու սովորություն չունեմ։ Ես իմ խելքն ունեմ։ Իսկ դու գիտե՞ս ինչպես են չափում շարժիչի հզորությունը։

Հորեղբորորդիս տարուբերեց գլուխը։

— Այ, տեսնո՞ւմ ես ինչ է նշանակում արտադրական պրակտիկային չմասնակ-

ցելը: Ուրեմն իմացիր, շարժիչը կախում են օդում, աշխատեցնում և որոշում հզորությունը, իսկ չէ՞ որ այդ հզորության մեծ մասը անտեղի է ծախսվում: Օրինակ՝ մի տասը ձիաուժ կպահանջվի, որպեսզի սա տեղից շարժվի: Քանի՞ կիլոգրամ է:

— 790 կիլոգրամ:

Ինչպես երևում է՝ նա հայրիկի հետ անգիր է արել մեքենայի տեխնիկական բոլոր տվյալները:

—Այ, տեսնո՞ւմ ես, համարյա մեկ տոննա: Իսկ եթե դու, հայրիկդ, մայրիկդ, տատիկդ ու պապիկդ էլ նստեք, իսկ եթե ճանապարհն էլ վերելք ու քարքարոտ լինի, ապա մի քսան ձիաուժով հազիվ հաղթահարեք: Համոզվեցի՞ր, որ շարժիչին ազատ վազքի համար մնում է ընդամենը տասը ձիաուժ:

Նա չհասցրեց բացել բերանը:

— Ոչինչ, տասը ձիաուժն էլ լրիվ բավական է, ապա մի հիշիր երեկվա ֆիլմում չորս ձի լծած կառքը ոնց էր սլանում... ոնց որ...

Ես չհասցրեցի ավարտել միտքս ու լըրիվ նվաճել այդ դիմացկունին, որովհետև շրխկոցով բացվեցին մեր պատուհանի փեղկերը և երևաց մայրիկիս երջանիկ ժպիտը:

— Երեխաներ, բարձրացեք նախաճաշելու, շուտով մեկնելու ենք:

Հարգելի օտարազգի ընթերցողներ, եթե երբևէ հայերը ձեզ պիկնիկի հրավիրեն, երբեք չհավատաք, որ դուք գնում եք բնության գրկում հանգստանալու: Նախ նրանք կշրջեն նույն գետակի ափերով՝ հարմար անկյուն որոնելով, և մոտավորապես երկու ժամ հետո կորոշեն վերադառնալու ամենաառաջին ընտրած վայրը, որն արդեն, իհարկե, զբաղված կըլինի: Վերջ ի վերջո, ամենավատ, ամենաքարքարոտ, ամենակեղտոտ անկյունը կհյուրընկալի ձեզ: Նրանք նախ և առաջ ձեզ կստիպեն կարգի բերել այն, հավաքել թերթերը, ուրիշի ուտելիքների մընացորդները, ապա ծածկոց փռել և ցախ հավաքել, չնայած այդտեղ կրակ վառել չի կարելի: Հետո զանազան լիմոնադների, հանքային ջրերի, հյութերի շշերը պետք է այնպես տեղավորել գետակի մեջ, որ մինչև վիզը թաղվեն՝ լավ սառչելու համար: Մի քանի անգամ դուք ստիպված կլինեք հոսանքն ի վար վազել ձմերուկի ետևից: Այդ ընթացքում խարույկը վառվում-վերջանում է, և հերթը հասնում է խորովածին: Հետո հարկ կլինի բաղրիջանն ու պղպեղները մաքրել, հետո բանջարեղենը մաքրել, մրգերը լվանալու համար ջուր ճարել...

Իսկ հանգստանալ կարելի է և վերադարձի ճանապարհին:

Երբ մեր հայրիկներն ու մայրիկները մի փոքր հեռացել էին մեր իջած անկյունից, ես այդ ամենը բացատրում էի այդ դմբոյին ու իսկապես զվարճանալու հազար ու մի առաջարկություններ էի անում: Բայց այդ վախկոտը ոչ մեկը չէր ընդունում.

— Իսկ եթե նրանք հենց այդ ժամանակ վերադառնա՞ն,— հակաճառում էր նա:

— Դու մի վախենա, ես դրանք իսկույն կամրացնեմ, չէ՞ որ ամբողջ արտադրական ուսուցումս անց եմ կացրել ավտոգործարանում,—համոզում էի ես,— դու պատկերացրու միայն, թե ինչպես կգլորվեն զառիթափից: Ուզում եմ մըրցույթ կազմակերպենք, թող հաղթողը տասն անգամ կտտացնի պարտվողի գըլխին:

Հորեղբորորդիս աչքի պոչով նայեց մեքենայի անվադողերին, հետո սափրած գլխիս, բայց չգայթակղվեց:

— Դե լավ,— զիջեցի ես,— արի ճանապարհով գլորենք, նման բան ես տեսել եմ «Այսօր աշխարհում» հաղորդման մեջ: Ինչ հիասքանչ մրցույթ էր:

— Հայրիկդ ասաց, որ ցախ հավաքենք:

Ա՜յ քեզ դմբո:

— Ես իմ հայրիկին գիտեմ, նա ամեն ինչ ինձ է ասում, բայց հետո ինքն է անում:

— Արի նավակներ բաց թողնենք: Ում նավակը շուտ հասնի այն ծառին, թող նա պարտվողի գլխին կտտացնի տասը անգամ:

— Ո՜նց չէ, նավակներ բաց թողնենք,— այդ էր պակաս, որ ես համաձայնվեի,— նավապետիս տես:

Մենք սկսեցինք ցախ հավաքել:

— Իմ կարծիքով՝ խարույկը վառելու ժամանակն է,— հոգնելով ասացի ես:

Այս անգամ հորեղբորորդիս համաձայնեց ինձ հետ, երևում է՝ նա էլ էր հոգնել: Շատ չարչարվեցինք, բայց ոչինչ չստացվեց և երևի չէր էլ ստացվի, եթե իմ գիտուն հանճարեղ միտք չփայլատակեր:

— Ինչ հիմարն ենք, բենզինը թողած՝ չոր տերևներ ենք հավաքում նախա-

մարդու պես:

Արդյոք հարկ կա՞ ասելու, որ հորեղբայրս ավտոմեքենան չափից դուրս մոտ էր կանգնեցրել խարույկին, չպահպանելով անվտանգության երթևեկության կանոնները: Արդյոք հարկ կա՞ նկարագրելու հորեղբորորդուս չոված աչքերը, իհարկե՝ ոչ, տխուր հիշողությունների նըկարագրությունը պետք է թողնել պոետներին: Տեսնելով մեքենայի բռնկված անվադողը և խնկույն գնահատելով իրավիճակը, սկսեցի մագլցել մոտակա բլուրը: Մյուս բլրի լանջին ինձ հասավ հորեղբորորդուս շնչառությունը: Սկզբում մենք որոշեցինք ոտքով քաղաք հասնել ու գիշերել տատիկիս մոտ, բայց հետո ես նըրան համոզեցի փախչել հովիվների մոտ և ընդհանրապես ապրել սարերում, հեռու այդ անիծյալ մեքենաներից, էլեկտրականությունից, բենզինից, ատոմներից...

Ինձ մնում է միայն ավելացնել, որ դրանից հետո մինչև օրս հորեղբայրս ոտք չի դրել մեր տուն, ինձ նման լակոտի պատճառով, ինչպես ասում է հայրս: Բայց ես ինձ ազնիվ մարդ եմ համարում, որովհետև իմ շարադրության մեջ նկարագրել էի կիրակնօրյա հանգիստն այնպես, ինչպես իրականում եղել էր: Եվ մի՞թե ինձ նման ազնիվ մարդու համար նշանակություն ուներ, որ այն ժամանակ հորեղբայրս մեր դասարանի հայոց լեզվի և գրականության ուսուցիչն էր. մի՞թե ես կարող էի չգրել, որ ամեն ինչում մեծերն են մեղավոր, որ չի կարելի փոքրերին մենակ թողնել ու հեռանալ կնոջ հետ, որ չի կարելի խախտել անվտանգ երթևեկության կանոնները և որ վերջապես չի կարելի փակել մեքենայի դռները: Երեխաները պարզապես կպտտեն ղեկը և ուրիշ ոչնչի ձեռք չեն տա, պետք չէ, որ նրանք չտես մեծանան:



Մի՞թե ես ընդունակ էի մի կոտրված «երեքի» համար իմ առաջին ու վերջին, իմ միակ պիկնիկի փաստերը խեղաթյուրել: Այն ժամանակ՝ իհարկե ոչ:



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

## Ձմեռ նկարիչն ու սառցե կավիճը

Ծերունու նման կանգնել է տխուր
Ծերմակած ծառը,
Սպիտակով են ներկվել այգի, արտ,
պուրակ,
Դաշտ ու անտառը…

Պատուհաններին նա համատարած
Գծագրել է նախշուն պատկերներ,
Ձեղնահարկերից սառցե, ձևավոր,
Անթիվ-անհամար լուլաներ կախել:

Այսպես շարունակ տարբեր ձևերով
Հա նկարում է մեր նկարիչը,
Մինչև մի գիշեր՝ գարնան ջերմ շնչից
Հալչում է նրա սառցե կավիճը:

## Հին հուշարձանների առաջ

Խոնարհվում եմ առջև ձեր շիրմաքարերի
Եվ լուռ նայում դարերից եկած,
Գունագեղ մամռից հյուսված
Այս չքնաղ երկնային գորգին,
Որ վարագուրել է թվական ու անուն,
Սակայն չի ջնջել…
Խնամքով պահել, հասցրել է մեզ,
Որպես անձնագիրը մեր հզոր ազգի,
Որպես սրբությունը մեր ժողովրդի,
Որպես ուղեցույցը մեր ապագայի…
Լուռ խոնարհվում եմ ձեր շիրմաքարերի առջև,
Իմ նախապապեր:
«Ձեր վաստակը մեր մեջ ունենալով միայն…»
Այսպես պիտի կյանքն այս
շարունակել…

ՄԻՀՐԱՆ ՀԱԿՈԲՅԱՆ
Երևան, № 189 միջն. դպրոց

## Տատիս խնոցին

Տատիկս, երբ ջահել է եղել,
Փրփուր ու ծաղիկ լավաշ է թխել,
Կով, ոչխար կթել, խնոցի հարել,
Մարգ, այգի ջրել… բերքը հավաքել…

Հետո դպրոց է գնացել տատս
Եվ իր սիրելի աշակերտներին
Սովորեցրել է մեսրոպյան տառեր,
Բնության բազում գաղտնիքներ պատմել:

Հիմա բնասեր տատս ծերացել,
Էլ կով չի պահում,
Իսկ դատարկ գոմում արձակուրդներին
Պահմտոցի ենք թոռներով խաղում:

Զոր խնոցին էլ բերնիվար, դատարկ,
Կախված մառանում,
Իմ ծեր տատիկի «օֆ ու ախ»-ին է
Լուռ արձագանքում:

ԲԵՆԻԱՄԻՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Երևան, Մ. Նալբանդյանի անվ.
№ 88 դպրոց, 5-րդ դաս.



# Նվերներ հայրենիքիս

Տիեզերահայաց աշխարհներից, արևներից
ու աստղերից
Առատաձեռն բարիքներով գալիս եմ ես
հեռուներից.
Բերել եմ քեզ, իմ Հայաստան,
Բոցավառված սիրտը իմ վեհ,
Ձեռքիս վրա՝ ծանրաբեռնված ընծաները
հրաշագեղ:

Եթերային մեծ օվկիանից,
Քեզ բերել եմ ջուր երկնային,
Որ Սևանդ չցամաքի,
Կանաչազարդ ծառ ու ծաղիկ՝
Բնությունդ որ միշտ ծաղկի:
Պերճ աստղերից տիեզերքի
Բերել եմ քեզ գոհար ցոլքեր,
Որ դրոշդ ելնի եթեր:
Հրալեցուն արեգակից
Բերել եմ քեզ բոցեր անշեջ,
Որ սիրտը քո ապրի անվերջ:
Եվ, վերջապես, հեռուներից
Քեզ ընծա եմ բերել ես ինձ:

ԼԻԼՅԱ ՆՈՒՐԲԵԿՅԱՆ
Երևան, № 106 դպրոց, 9-րդ դաս.

# Հանելուկներ

Հազար ասեղը շալակին քայլում,
Բանկոն կամ տաբատ, երբեք չի կարում:
(վզեՍ)

Ի՞նչ զինվոր է դանդաղաշարժ,
Մեջքին վահան ունի անշարժ:
(տվվղ)

Կլոր է՝ գնդակ չէ,
Ծերտավոր է՝ վագր չէ,
Ե՛վ կանաչ է, և՛ կարմիր,
Իսկ թե ինչ է՝ կռահիր:
(հյաժղրճ)

ՎԱՐԴԱՆ ԲԱԼԱՅԱՆ
Երևան, № 181 դպրոց, 4-րդ դաս.

ԱՐԾ. ԼՏ ՔԵՇԻՇՅԱՆ
Լենինական, 13 տ.



## Աշնանային

Աշնանային արցունք՝
Աչք-ամպիկից պոկված,
Պեղում լույսի հոգին
Ու իջնում ես ցած:
Անձրև աշնանային,
Անձրև՝ խոնավ, բարի,
Ծոյիր քրիզանթեմին՝
Աշունն այս երկարի...
Թափվիր տերևների
Աչքերի մեջ կանաչ,
Որ լույսի պես մաքուր
Դառնաս կարոտ ու կանչ:

ՎԵՐԳԻՆԵ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ
Էջմիածին, Գեղակերտի միջն. դպրոց. 10-րդ դաս.



Բուրում եք դուք իմ սեղանին,
Անուշ բույրով գերում եք ինձ,
Վառ ժպտում եք իմ սեղանին,
Ձեր ժպիտով գերում եք ինձ:
Ձնծաղիկներ, նուրբ ծաղիկներ,
Գարնան հուշեր, գարնան հույսեր,
Ձնծաղիկներ, իմ քույրիկներ,
Կապուտաչյա նորահարսներ:



Աշնան լացոտ այս ժամին
Գնում եմ ես դեռ առաջ,
Երբ որ տերևը դեղնած
Ինձ է նայում զայրացած:
Ես մեղավոր եմ գուցե,
Դեղնած տերև, քո առջև,
Ես հանցավոր եմ գուցե,
Մրսած տերև, քո առջև:
Եվ քայլում եմ ես մոլոր,
Մրսած, դեղնած, հանցավոր...
Աշնան լացոտ այս ժամին,
Ես քայլում եմ մեղավոր:



Այո, դու եկար, եկար այն պահին,
Երբ որ տերևը դեղնած էր ծառին,
Եկար, այն պահին,
Երբ նայում էի տերևաթափին:
Այո, դու եկար ու մոտեցար ինձ,
Երբ դեղնած, մրսած նայում էի ես
տերևաթափին:

Հիմա գնում ես հալված ու մաշված.
Գնում, խառնվում առվի ջրերին...

ՆԱԻՐԱ ՍԻՄՈՆՅԱՆ
Բոգդանովկայի շրջ. Հեշտիայի դպրոց, 10-րդ դաս.



ՎԻԼՅԱՄ ՋԵՅՔՈԲՍ
անգլիացի գրող
(1863—1943 թթ.)

Նկարը՝ ԱՆԴՐԱՆԻԿ ՆԻԼԻԿՅԱՆԻ

Կեսօր էր: Փոքրիկ Բիլլին քայլում էր Օլդրիջով՝ իր սոված աչքերը գետնից չկտրելով և հուսալով ուտելու որևէ բան գտնել: Նա ափսոսում էր, որ կերել էր չորացած հացի կտորը, որը նախատեսված էր ճաշի համար:

Բայց Օլդրիջում ուտելու համար ոչինչ չկար: Բիլլի Ջոնսը թեքվեց ուրիշ փողոց: Նրա ուշադրությունը գրավեց մի շուն, որի մի մարդու ստիպում էր վերցնել իրեն: Մարդը գոռաց, փայտի կտորներ նետեց նրա վրա, բայց ոչինչ չօգնեց: Լինելով բարի մարդ, նա վերջապես վերցրեց շանը և շարունակեց ճանապարհը:

«Նա հիմա իրեն լավ է զգում,— մտածեց փոքրիկ որբը,— կունենա այնքան ուտելիք, որքան ցանկանում է»:

Տղան պատրաստ էր ընդօրինակել շանը: Նա հաստատ գիտեր, որ ինքը նույնպես կարող է շան նման օգտակար լինել:

Գլխում մի միտք ծագեց, հենց որ մի գեր ծովային իր ընկերների հետ անցավ նրա կողքով: Ծովայինն ուներ բարի դեմք և այնպիսի մարդու կազմվածք, որը միշտ լավ էր ապրել: Բիլլին վազեց նրա ետևից:

— Հե՜յ,— կանչեց Սամուել Բրաունը,— ի՞նչ ես ուզում:

— Ես քեզ եմ ուզում, հայրիկ,— ասաց Բիլլին:

Ծովայինը ժպտաց.

— Ես քո հայրիկը չեմ, փոքրիկ:

— Ոչ, դու իմ հայրիկն ես,— ասաց անբախտ Բիլլին,— ինքդ էլ գիտես, որ իմ հայրը դու ես:

— Սխալվում ես, տղաս,— ասաց միստր Բրաունը՝ դեռ շարունակելով ժպտալ,— ահա, վերցրու և հեռացիր:

Նա տղային տվեց մի պեննի: Փոքրիկ Բիլլին, հասկանալով, որ լավ հայրիկ է գտել, գնաց նրա ետևից:



— Լսիր, տղա, վազիր տուն,— գոչեց միստր Բրաունը:

— Ես հենց տուն էլ գնում եմ, հայրիկ,— պատասխանեց Բիլլին՝ շարունակելով հետևել նրան:

— Եվ ինձ հայրիկ մի կոչիր:

— Իսկ ինչո՞ւ,— հարցրեց տղան:

Խեղճ Սեմը ոչինչ չասաց և արագ շարունակեց ճանապարհը դեպի նավ: Նա տախտակամած ոտք դրեց առանց մի խոսք ասելու, բայց նախքան կհասներ իր նավախցին, շուռ եկավ և նկատեց ափին կանգնած տղայի փոքրիկ կերպարանքը:

— Հե՜յ, տղա, ի՞նչ ես ուզում,— գոռաց նավապետը, երբ տեսավ նրան:

— Ես իմ հորն եմ ուզում, սըր, Սեմին,— պատասխանեց տղան, որ ականջները սրել էր:

Նավապետը տեղից վեր կացավ և հետաքրքրությամբ նայեց նրան: Երկու ծովայինները, որոնք Սեմի հետ էին եղել, բացատրեցին իրողությունը:

— Հեռացիր,— ասաց նավապետը տըղային:

— Ես չեմ էլ մտածում հեռանալ, սըր,— պատասխանեց Բիլլի Ջոնսը:

Նավապետը կանչեց Սեմին:

— Քո որդին քեզ է ուզում,— ասաց նավապետը և տղային առաջարկեց նավ բարձրանալ:

— Նա իմ որդին չէ, սըր,— ատամների արանքից նետեց միստր Բրաունը,— մինչև այս կեսօրը նրան չէի էլ տեսել:

— Դու լսեցի՞ր, թե քո հայրն ինչ ասաց,— ասաց նավապետը,— որտե՞ղ է մայրդ, տղաս:

— Նա մեռել է, սըր: Ես այժմ միայն հայր ունեմ:

Նավապետը բարի մարդ էր, և Սեմն էլ նավի լավ մարդկանցից էր:

— Կցանկանա՞ս հորդ հետ ծով դուրս գալ,— հարցրեց նա:

Տղան երջանիկ ժպտաց:

— Ես դեմ չեմ քեզ լավություն անել, Սեմ,— շարունակեց նավապետը,— նա կարող է գալ:

— Լավություն,— կրկնեց Բրաունը,— ինձ լավություն պետք չէ:

— Դե, դե,— ասաց նավապետը,— չարժե շնորհակալություն հայտնել: Տար նրան ու ուտելու բան տուր:

Առավոտյան ժամը 6-ին նավը թողեց Լոնդոնը: Տղան ուրախությունից գժվել էր: Միստր Բրաունը ոչ մի անգամ չնայեց

նրա կողմը, բայց մյուսները ամբողջ ժամանակ խոսում էին հետը և թույլ էին տալիս անել սրտի ուզածը:
Այդ օրը նավապետը միստր Բրաունին հինգ անգամ կանչեց իր մոտ՝ որդու մասին հարցնելու:
Հաջորդ կեսօրին նա այնքան հոգնած ու դժբախտ էր, որ երբ նավը խարիսխ գցեց Ուիթերսիի փոքրիկ նավահանգըստում, նավապետը նրան թույլ տվեց մընալ նավախցիկում, և մարդիկ աշխատեցին առանց նրա:
Երեկոյան ժամը 9-ին, երբ նավը թողեց Ուիթերսին և երբ անցել էին մի քանի մղոն Դիմպորտի ուղղությամբ, նավաստիներից մեկը հայտնաբերեց, որ միստր Բրաունը անհետացել է:
— Ի՞նչ պետք է անենք տղային,— հարցրեց մեկը:
— Իսկ ի՞նչ կարող եմ անել,— գոռաց նավապետը,— հո նավից դուրս չե՞մ նետելու:
— Ես կարծում եմ, որ երբ հասնենք Դիմպորտ...
— Լավ, մի բան կմտածենք,— ասաց նավապետը,— գուցե Սեմի կինը գա և տանի նրան:
Մյուս օրը նավը խարիսխ գցեց Դիմպորտում: Նավապետը և իր ընկերը ափ գնացին՝ տղային թողնելով նավում:
— Հուսանք, որ նա իրեն լավ կզգա,— ասաց նավապետը,— այնտեղ ուտելիք էլ կա, մահճակալ էլ:
Լուռ քայլում էին, քանի դեռ ընկերը չէր շրջվել ու չէր ճչացել իր մի ծանոթին հանկարծակի տեսնելու պատճառով: Նավապետն էլ շրջվեց, և փոքրիկ կերպարանքը, որը հենց նոր թեքվել էր անկյունը, կանգ առավ և սկսեց նայել նրանց:
— Հայրիկ,— կանչեց տղան:
— Նա, նա այժմ էլ քեզ է որդեգրվել,— ասաց նավապետը:
— Կամ էլ քեզ,— ասաց ընկերը,— ո՞ւմ ես ուզում, տղա,— դարձավ նա տըղային:
— Ես ուզում եմ իմ հորը,— ասաց տըղան՝ նայելով նավապետին:
Նավապետը կարմրած դեմքով շարունակեց ճանապարհը՝ մինչև որ հասավ տուն: Ընկերը հետևեց նրան: Նավապետի կինը նրանց դիմավորեց դռան մոտ:
— Ի՞նչ է պատահել,— հարցրեց միսիս Հանթը,— սա ո՞ւմ տղան է:
— Դա մի փոքրիկ խեղճագար տղա է,— սկսեց նավապետը,— նա եկավ նավ...
— Ես գիժ չեմ, հայրիկ,— ասաց Բիլլի Ջոնսը:
Միսիս Հանթը նայեց ամուսնուն և ասաց ընդամենը երկու բառ. «Օ՜հ, Ջո»:
Տիրեց անհարմար լռություն: Նավապետի ընկերը գոչեց.
— Էյ, դու, փոքրիկ սատանա, չէ՞ որ նավապետը այնքան բարի է քո նկատմամբ:
— Նա բարի՞ է տրամադրված տղայի նկատմամբ,— հարցրեց նավապետի կինը:
—Ինչպես հայր, ինչպես հորեղբայր,— ասաց անբախտ մարդը:
Առանց որևէ խոսքի միսիս Հանթը մըտավ տուն և դուռը բարկացած փակեց: Նավապետ Հանթը նախ բարկացած նայեց տղային, որ կանգնել էր անվտանգ հեռավորության վրա, այնուհետև՝ փակված դռանը: Հետո բացեց այն և ներս մտավ:
— Լսիր, Պոլլի,— սկսեց նա:
— Չխոսե՛ս ինձ հետ,— եղավ պատասխանը,— ինչպե՞ս ես կարողանում այսքանից հետո նայել աչքերիս:
— Տղան բոլորին հայր է անվանում,— ասաց նավապետը,— ես համոզված եմ, որ նա արդեն իր համար ուրիշին է գտել և...
Մինչ նա կավարտեր, դուռը բացվեց, և նրանք տեսան Բիլլի Ջոնսի գունատ դեմքը:
— Մայրիկ, ես կարո՞ղ եմ ներս գալ,— ասաց տղան:
Նավապետը գլխարկով ծածկեց բերանը և սկսեց լուռ ծիծաղել:
— Այսինքն՝ ո՞նց թե մայրիկ,— հարցրեց միսիս Հանթը,— ես քո մայրը չեմ:
— Այո, դու ես,— ասաց Բիլլի Ջոնսը:
Միսիս Հանթը զարմացած նայեց նըրան, հետո նստեց ու սկսեց այնքան սըրտանց ծիծաղել, որ Բիլլի Ջոնսը երջանիկ ժպտալով ներս մտավ և դուռը փակեց:
Ասել, թե նավապետ Հանթն ու իր կինը որդեգրեցին նրան, ինչպես մարդկանց մեծ մասն է ասում, ճիշտ չի լինի: Երբ մարդիկ հարցրին նավապետին՝ նրա տանը տղայի հայտնվելու մասին, նա բացատրեց, որ տղան է որդեգրվել իրենց, մի բացատրություն, որին միստր Սամուել Բրաունը հեշտությամբ հավատաց:

**ԳՈԹՀՈԼԴ ԷՖՐԱՅԻՄ ԼԵՍՍԻՆԳ**
գերմանացի գրող (1729—1781 թթ.)
Գերմաներենից թարգմանեց **ՍԱՄՎԵԼ ՄԿՐՏՉՅԱՆԸ**

Էշն իր սարսափելի ձայնով որսի ժամանակ պետք է օգներ իմաստուն առյուծին, և երբ նրանք անտառի կողմն էին գնում, մի անհամեստ ագռավ ծառնիվար կանչեց.

— Ա՜յ թե զույգ եմ ասել, հա՜: Չե՞ս ամաչում էշի հետ քայլելուց:

—Ում կարող եմ օգտագործել, կարող եմ նաև թույլ տալ, որ ընկերակցի ինձ,—պատասխանեց առյուծը:

Այսպես են մտածում բոլոր մեծերը, երբ ավելի ցածր գտնվող մեկին իրենց մտերմությամբ են մեծարում:

— Մի այնպիսի խելացի կենդանու անուն ասա, որին ես ի վիճակի չլինեմ նմանակել,— այսպես պարծեցավ կապիկը աղվեսի մոտ:

— Իսկ դու արհամարհված որևէ կենդանու անուն տուր, որի մտքով անցնի քեզ նմանվել:

Ազգիս գրչի մշակներ, կարիք կա՞ որ ավելի հստակ շարադրեմ ասելիքս:

Զևսը նոր թագավոր էր ուղարկել գորտերին. խաղաղասեր կոճղի փոխարեն՝ անկուշտ ջրային օձին:

— Դու մեր թագավո՞րն ես, ինչո՞ւ ես կուլ տալիս մեզ,— աղաղակեցին գորտերը:

— Որովհետև դուք խնդրել էիք Զևսին, որ ինձ ուղարկի ձեզ թագավոր:

— Ես չեմ խնդրել,— առարկեց գորտերից մեկը, որին օձն արդեն կուլ էր տալիս աչքերով:

— Չե՞ս խնդրել,— հարցրեց ջրային օձը:— Ավելի վատ: Այդ դեպքում ես պետք է կուլ տամ քեզ, որովհետև չես խնդրել:

Նկարը ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

ՌԱՖԱՅԵԼ ՂԱԶԱՆՉՅԱՆ

# Փրկվածները

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ԵՐԿՈՒ ՈՐԲԵՐ,
ՔՈՒՐ ՈՒ ԱԽՊԵՐ...
ՀՈՎՀ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

Արևը ծովին էր դիպել: Չարաճճի մանկանց խաղով հրապուրված՝ ծովն իր կոհակների վրա հազարափշուր հայելի էր առել ու բազմապատիկ շողարձակումով խտղտացնում էր երկնի լուրթ աչքը: Ճերմակ ճայերը թառել էին աղապատ ժայռերին, ու նրանց անհանգիստ կոհնչները ափը հսկող աչալուրջ պահակների ազդանշան էին թվում:

Ծովախորշում, եղեգների ու թփուտների մեջ թեթևակի երերում էր գորշավուն մի մակույկ: Մութ ու փակ աչքերով, բութ քիթերեսով հրեշի էր նման, որ կտրատում էր իրեն՝ սաններից պոկ գալու համար:

Նկուղում փակված մանուկներին ծովախորշ էին բերել և թաքցրել եղեգների մեջ: Յասաուլները չէին շտապում նրանց մակույկ նստեցնել, բայց և արգելում էին դուրս գալ, աղմուկ-աղաղակ բարձրացնել, թեև չորս կողմը ամայի էր, լռություն: Ինչ-որ բանի էին սպասում և ժամանակը ծամելով մեկիկ-մեկիկ հաշվում էին որբուկներին, հնազանդ գառնուկների պես աջից ձախ տեղափոխում, ձախից՝ աջ:

Հինգից տասը-տասներկու տարեկան երեխաներ էին՝ տղա-աղջիկ, թուխ աչքունքով, շեկլիկ մազերով, նվազ ու վըտիտ, ցնցոտիների մեջ, բոլորն էլ վախվորած ու շփոթ:

Ափ նետված ձկնիկների վտառ էր կարծես:

Յասաուլները նստել էին հողաթմբին ու դանակներով դալար եղեգնի ցողուններն էին տաշտշում: Ինչ-որ անցք էին բացում ու մոտեցնում շուրթերին, ագահորեն ծծում: Կլեպները շպրտում էին երեխաների կողմը, որոնք միմյանց հրըմըշտնելով, կոխկրտելով, քիթ ու պռունկ ճանկռոտելով հարձակվում էին գզգզված կլեպների վրա: Սովահար ու հյուծված՝ ուտելու ինչ-որ բան էին փնտրում:

Լացն ու կոծը խեղդվում էին եղեգների մեջ:

— Ձեններդ կտրե՛ք, շա՛ն կաթ կերածներ,— գոռգոռում էին յասաուլները և ձեռքները մեկնում քարերին հենած հրացաններին:

— Հիմա կրակ կտանք ու կվառենք,— սպառնում էին՝ ատամները մխրճած դալար եղեգների մաշկի մեջ:

— Չուլ ու փալասը, կաշին-ոսկորը չեն վառվի,— հոխորտում էր նրանցից մեկը,— չէ, ծովը լցնենք, պրծնենք...

— Նավթ կլցնենք վրաները՝ կճրտճըրտան,— ձայնակցում էր մյուսը:

— Նա՞վթ որտեղից ճարենք:

— Իրար ետևից թե կանգնեցնենք, մի գնդակն էլ հերիք է, որ ծակի-անցնի բոլորին...

— Քանի՞սն են...

— Քսանինը:

— Նորից հաշվենք, էնտեղ որ հաշիվը հարցնեն, կասենք հիսուն լակոտ են եղել:

— Հիսունի դիմաց՝ մի քանի ղուրուշ...

Հետո լռեցին, ու միայն ատամների կրճտոցներն ու ֆսֆսոցներն էին լսվում, ասես խուլ ու խզված մեղեդիներ էին արձակում եղեգնյա փողերը:

Իսկ երեխաների լացն ու կոծը չէր դադարում:

Ձեն-ձենի տալով, սպառնում ու հայհոյում էին յասաուլները.

— Վեր ընկիր տեղդ, մողե՛ս:

— Բզե՛զ, հիմա կփչեմ՝ կցնդես:

— Առնե՛տ, մտիր անցքդ, թե չէ սվինիս ծայրին կառնեմ:

— Ա՛յ կատվի ձագ, լեզուդ կպոկեմ, մլավոցդ թող:

— Շա՛ն լակոտ, աղիքներդ կթափեմ...

Ու աղիողորմ ձայները աշխարհ էին բռնել:

Բայց աշխարհի ականջը խուլ էր, լեզուն՝ կտրած, բերանը՝ խուփ:

Արևը թեքվում էր հանդիպակաց լեռան թիկունքին, ու ծովից փչող քամին սառը զրնգոց էր հաղորդում մանուկների ատամնազարկերին, սառած, չորուկ ոսկորներին:

Իսկ ծովախորշում, գորտերի կռկռոց-



ների տակ նրանց էր սպասում գորշավուն, կոպտատաշ մակույկը, որ ամենակուլ հրեշի պես պատրաստվում է գերեվարված մանուկներին ծովի խորքը տանելու:

Միայն իրիկնադեմին խշխշացին եղեգները, և մի կախարդ ծերուկ հայտնըվեց՝ թուրք վալիի սմքած ու չոր կերպարանքը:

Յասաուլները անմիջապես ոտքի ցատկեցին ու խոնարհվեցին եկվորի առաջ: Ապա շարք կանգնեցրին երեխաներին բստ հասակի, ու վալին սկսեց մանրամասն զննել մեկ առ մեկ: Անընդհատ գըլուխն էր դժկամորեն շարժում:

Նրա ետևից խոնարհ ու լուռ քարշ էին գալիս յասաուլները: Վալին տնտղում էր երեխաներին, հասակներն էր չափչփում: Քրթմնջում էր քթի տակ: Դժգոհ էր ին?-

որ բանից:
— Բարակ են, ծխախոտի թուղթ են:
— Հինգ օր բան չեն կերել,— յասաուլները արդարանում էին վալիի առջև:
Իսկ վալին ասես գառ էր ընտրում, և ոչ մեկը սրտովը չէր:
Երեխաները հասկանում էին, որ եթե ծերուկը մեկն ու մեկի վրա մատը դնի, նա կփրկվի քաղցից ու ցրտից, յասաուլների ճիրաններից: Եվ նրանց աղերսող հայացքները, առաջ մեկնված ձեռքերը փրկություն էին հայցում չոր ու սմքած, չար աչքերով, թոշնած երեսով կախարդ ծերուկից:
— Ջեռներդ կտրեք, շան կաթ կերածներ,— գոռգոռում էին յասաուլները:
Վալին գնաց-եկավ, անցավ-դարձավ ու վերջապես կանգ առավ շեկլիկ, երկար մազերով, նիհար ու գունատ դեմքով, կապույտ ու վճիտ աչքերով մի աղջնակի առաջ: Մատը տնկեց վրան:
— Անունդ ի՞նչ է.— նրա ատամների արանքում ասես օդն էր սվսվում, և բառերը խոշտանգված էին դուրս սողում:
Աղջիկը տագնապած նայեց չար կախարդին ու ճչաց:
Վալին փորձեց քաշել նրա թևից: Այդ պահին շարքից դուրս եկավ այն տղան, որի անունը յասաուլները «մողես» էին կնքել, քանի որ երկարուկ էր ու ճիլոպի պես դյուրաթեք: Տղան՝ բռունցքները սեղմած, զայրույթի ու լացի մեջ, փորձեց պաշտպանել աղջկան:
— Իմ քույրիկն է Քարմիլեն...
— Վարուժնակ, փրկի՛ր,— ճչում էր Քարմիլեն:
— Քարմիլե,— փորձեց ժպտալ վալին,— դու իմ դստրիկը կլինես, արի գընանք...
— Չեմ գնա, չեմ գնա,— աղջնակը ծառս էր լինում չորուկ մատների արանքում:
Յասաուլներից մեկը ճանկեց աղջնակին ու շպրտեց ավազներին, իսկ եղբորը՝ մակույկի մեջ, որն արդեն լիքն էր երեխաներով:
Վալին մանրադրամներ լցրեց յասաուլների ափերի մեջ:
Երբ բոլորին լցրին մակույկը, յասաուլներից մեկը առջևում տեղավորվեց, իսկ մյուսը՝ ետևում:
Գորշավուն, կոպիտ հրեշ-մակույկը բաց ծով դուրս եկավ:
Ափի երկայնքով քայլում էր վալին՝ շեկլիկ Քարմիլեի ձեռքից պինդ բռնած:
Աղե ափերին իջած ճայերը թռան, ու տագնապած կռինչները սկսեցին ուղեկցել ալիքների վրա թափահարվող մակույկին:
Թոհուբոհի մեջ մի ձկնիկ մակույկից իրեն հանկարծ ծովը նետեց ու, յասաուլների աչքից անտես՝ սուզվեց կոհակների թմբերի տակ:
Վարուժնակն էր:

Ձկնիկը լողում էր սուզված: Բայց ինչքա՞ն կարող էր շունչը պահել: Ոչ միայն շունչն էր կտրվում, այլ նաև սպառվել էր թևերի ու ոտքերի ուժը: Նա այնքան նիհար էր ու թեթև, որ ամենափոքրիկ կոհակն իսկ նրան կպահեր ջրի վրա, բայց ծովը դեպի իր խորքն էր ձգում, կանչում, հրապուրում իր հեքիաթների ջրասույզ դղյակներով... Վարուժնակը լողում էր ափն ի մերձ և մերթընդմերթ գլուխը ավելի ու ավելի էր ջրից հանում՝ տեսնելու ափով քայլող քույրիկին և նրան առևանգած վալիին:
Վալին գնալով ավելի ու ավելի էր հեռանում ափից, ահա ուր որ է բոլորովին աչքից կչքանա, իսկ տղան չի հասցնի տեսնել, թե ուր կորավ քույրիկը:
Մակույկը այլևս չէր երևում, հավանաբար դժբախտ երեխաներին ջրասույզ անելու համար յասաուլները հարմար վայր էին ընտրում ծովի խորքերում:
Տղան լողում էր վերջին ուժերով: Ահա արդեն վալին և քույրիկը հասան անտառի եզրին ու եթե անտառ մտնեն, երբեք-երբեք չի գտնի նրանց:
Պահ էր մնում, որ տղան ծանր գնդի պես սուզվեր մինչև հատակը, ու այլևս անհնարին կլիներ վեր լողալը: Այդպիսի մի քանի պահեր եղան, երբ շատ մոտ էր մահվանը, ու տղան վերհիշեց իր մի բուռ կյանքը: Ընդամենը մի քանի վայրկյանում:
... Կրակը տարածվեց տնետուն: Բոցերը լափում էին դուռ-լուսամուտ, նկուղ և պատշգամբ: Գերանները փլվում, տանիքը իջնում էր, գետինը պտտվում էր ոտքերի տակ: Հրաձգությունը սաստկանում էր, ռումբերը ավերում էին: Երկար չէին կարող դիմադրել, դիրքերը հեռվում էին, ուր կռվում էին հայրերն ու ավագ եղբայրները:
Տատն ու մայրը ընկան հենց աղբյուրի մոտ, ջուրը կարմրեց մի պահ ու նորից արծաթով խոխոջաց: Սրբեց-տարավ ամեն ինչ, քրոջ ձեռքը բռնած՝ ինքը վազեց

դեպի բարձունքը, ուր պաշտպանական դիրքերն էին:

... Յասաուլները մի խումբ մանուկների ծեծ ու ջարդով քշում էին հեռու, աչքերը չորս էին արել՝ որբ ու կորած նոր երեխաներ բռնելու ու հետները տանելու: Վարուժնակը Քարմիլեի ձեռքը բաց չէր թողնում, թեև քույրիկը լալիս էր ու անընդհատ սայթաքում: Հենց նման մի պահի էլ հայտնվեցին յասաուլների օղակի մեջ: Ոչ մի կերպ չհաջողվեց դուրս պրծնել: Փախստականներին սպառնում էին տեղնուտեղը գնդակահարել, առնել սվինների վրա կամ այրել մարագում: Նման դեպքեր շատ եղան:

Ու նրանց հինգ օր, հինգ գիշեր փակեցին նկուղում:

Բոլորն էլ իրենց պես որբացած երեխաներ էին...

Վարուժնակը իր հասակակիցների մեջ առաջին լողորդն էր: Հիմա էլ եթե հանգիստ ու խաղաղ լողար, չէր հոգնի և սուզվելիս էլ շունչը երբեք չէր կտրվի: Բայց սիրտը պայթում էր քրոջը կորցնելու տագնապից: Սակայն դա քիչ էր, շատ քիչ էր քրոջը փրկելու համար, թեև այդ պահերին իր փրկությունն էլ էր մազից կախված:

Ու պահ եկավ, որ տղան կորցրեց գիտակցությունը. լավ էր, որ ծովի խորքերում չէր: Զարկվեց ափամերձ քարերին: Արյունոտվել էին ծնկներն ու արմունկները: Կոհակների ճողփյունից ուշքի եկավ:

Մի հսկա, ծեր կաղնու տակ ուժասպառ փռվեց: Հետո գլխում մի հանդուգն միտք ծագեց. արագ-արագ բարձրացավ կաղնու կատարը և սկսեց ուշադրությամբ զննել շրջապատը:

Անտառից դուրս մի նեղլիկ արահետ էր ոլորվում: Փոշու և քարերի ետևից մերթընդմերթ նշմարվում էին երկու կերպարանք: Հազիվ կառչեց ծառի ճյուղերից, որ վայր չընկնի: Իհարկե, վալին էր և քույրիկը:

Ոտքերին ուժ տվեց՝ ինչքան կարող էր: Թփերի ու քարերի ետևում թաքնվելով, հետևում էր ակնդետ: Մոտենալ չէր կարելի, կնկատվեր:

Չէ, էլ ճար չկա, ինչ ուզում է լինի, կընհարձակվի ծեր կախարդի վրա ու կփրկի քրոջը: Բռունցքները սեղմեց:

Վալին քրոջը տանում էր գյուղի ծայրում, քարափին ծվարած մի տան ուղղությամբ: Որքան ուժ ուներ՝ վազեց:

Երկաթյա դարպասներն ու հաստ պարիսպը անառիկ ամրոցի պես էին: Ո՞րն էր մուտքը, ո՞րն էր ելքը: Ինչպե՞ս փրկի քրոջը:

Նա երկար-երկար թափառեց տան շուրջը, մինչև լրիվ մթնեց, նստեց մի ծառի տակ և... ընկղմվեց խառնակ երազների մեջ:

Ոչ մի լույս չկար մոտերքում, ամենուր խավար էր, իսկ տղան երազում կանչում էր...

Օրեր շարունակ շրջում էր տան մոտերքում. երկաթյա դարպասից ու բարձր պարսպից բացի՝ այդ ամրոցը պահպանում էր նաև գամփռ շունը, որը տերևի շարժումից իսկ գազազում էր, փրփրած ու մոլեգին կրծոտում էր շղթան:

Քարմիլեն չգիտեր, որ եղբայրն իրեն տեսնում էր հեռու-հեռու ծառերի կատարներից, տեսնում էր, թե ինչպես է ինքը բակն ավլում ու լվացք անում, ինչպես է աղբյուրից ջուր կրում ու օջախը վառում, ինչպես է բակի մի անկյունում թախծում ու լալիս, տոչորվում վշտից ու կարոտից:

Մի օր էլ, երբ Վարուժնակը քաղցած ու կիսամերկ շրջում էր տան մատույցներում, երկու ճերմակահեր կանայք հանդիպեցին: Նրանք բարի աչքեր ունեին ու վստահություն էին ներշնչում:

— Մենք որբերի ենք փրկում, անտուն մանուկների...

Վարուժնակը լացակումած պատմեց եղելությունը:

Կանայք շատ հուզվեցին, վշտացան և սիրտ տվեցին տղային: Համոզեցին որբանոց գնալ, ուր իր նման խնամքի կարոտ ու փրկված շատ ու շատ մանուկներ կան: Տղան ոչ մի կերպ չէր համաձայնում: Առանց քրոջ՝ երբեք: Բարի ու գթասիրտ կանայք խոստացան օգնել:

Մյուս անգամ կանանց հետ զինվորներն էլ եկան՝ կրծքներին խաչուփաչ փամփըշտակալներ, ուսերին՝ հրացաններ: Նրանք նման չէին յասաուլներին:

Վալիի դարպասներից նրանք դժվարությամբ ներս մտան: Աղմուկն ու աղաղակը աշխարհ բռնեց, գամփռը հաչում էր գազազած:

Դարպասներից վերջապես դուրս եկան բարի կանայք ու քաջ զինվորները: Նրանք իրենց հետ որբ ու թշվառներ էին բերում:

Քույր ու եղբայր հանդիպեցին որբանոցի ճանապարհին:



# Հովհաննես Շիրազ
## 1915—1985



Ջյուն է իջնում՝ կուտակվում
Մորս վրա վերևից,
Ասես փետուր է թափվում
Հրեշտակի թևերից։

Գերեզմանի այս հեռվում
Մեղմ դիզվում է թախծալից,
Մորս վրա մարմարվում՝
Շիրմաքար է թվում ինձ։

Այնպես մեղմիկ է դնում
Աստված փաթիլ փաթիլին,
Որ չցավի ողջ կյանքում
Մորս ցաված սիրտը հին։

Փաթիլվում է մեղմանձյուն,
Մարմարվում է մեղմաբար,
Աստված ինքն է ստեղծում
Մորս վրա շիրմաքար։



Բարձր սարի վրա վանք՝
Մենակ, մամռած, ամայի,
Լուռ խորհում է լուսնի տակ՝
Կյանքի մասին ու մահի։

Սարից բարակ ջուր կգա,
Կիջնի սարի թիկունքից՝
Աղբյուրի պես բյուրեղյա,
Կարծես գալիս է վանքից։

Մայրս է վանքում աղոթել,
Աղոթում էր ու լալիս.—
Ա՜խ, այն մորս արցունքն է
Աղբյուր դառած դեռ գալիս։

— Նայիր աչքերիս:
Միսաքը բարձրացրեց գլուխը ու նայեց հոր աչքերին:
— Դու կարո՞ղ ես ինձ ճիշտ պատասխանել:
Միսաքը գլխով արեց:
— Այո՞, թե՞ ոչ:
— Այո,— ասաց Միսաքը:
— Ասա, քո ինչի՞ն են պետք այս գրությունները:
Միսաքը շրթունքները սեղմեց ու նայեց հատակին:
— Լռո՞ւմ ես,— ասաց հայրը:— Ուրեմըն ասա, քեզ դպրոցում ի՞նչ տառեր են սովորեցրել:
— Սովորական,— ասաց Միսաքը:
— Իսկ սրանք ի՞նչ են,— ասաց հայրը. նրա ձայնը բարձր հնչեց:
— Խաղ է,— ասաց Միսաքը:
Հայրը հոգոց հանեց, և նրա համար հեշտ էր պատկերացնել, թե ինչ է լինում հետո, երբ առաստաղը փուլ է գալիս:
— Ուշադիր ինձ լսիր,— ասաց նա:— Դու փոքր ես և հեշտությամբ կարող ես ենթարկվել վատ ազդեցությունների: Ես քո հայրն եմ և չեմ ուզում, որ քեզ համար վատ լինի: Իսկ քեզ համար շատ վատ կլինի, եթե դու շարունակես ծածկագրերով զբաղվել:
Միսաքը շրթունքները սեղմած նայում էր հատակին:
— Ուրեմն, վերցրու թուղթ ու գրիչ և գրիր ինչ որ կասեմ,— ասաց հայրը:
Միսաքը շարժվեց տեղից, բերեց թուղթըն ու գրիչը և նստեց սեղանի մոտ.
— Գրիր.«15.03.1986 թ.: Ես՝ Միսաք Գևորգյանս, խզում եմ իմ նախկին ընկեր Գոռի հետ ունեցած բոլոր կապերս: Խոստանում եմ այլևս երբեք չզբաղվել ծածկագրերով և լսել հայրիկին»:
— Վերջ,— ասաց հայրը,— տուր ինձ:
Նա կարդաց գրությունը, հետո մեկնեց Միսաքին:
— Հիմա ծալիր:
Միսաքը խնամքով ծալեց թուղթը ու դրեց գրպանը:
— Չէ, այդպես չէ,— ասաց հայրը:— Հիմա դու այն կտանես նրանց տուն:
Միսաքի վախեցած աչքերը տիփով հիվանդացած երեխայի աչքերի արտահայտություն ստացան:
— Ուշադիր լսիր, թե ինչ եմ քեզ ասում: Դռան զանգը կսեղմես. եթե մայրը դուրս գա, թուղթն անմիջապես նրան կըտաս, եթե ինքը դուրս գա, կկանչես մոր և թուղթը կհանձնես:
Միսաքի աչքերը չռվել էին հոր կանոնավոր շարժվող շուրթերի վրա: Հայրը ուշադիր նայեց նրա աչքերին:
— Ամենակարևորն է, որ այնտեղ աչքերդ այդպիսի ապուշային արտահայտություն չունենան,— ասաց նա, և նրա ձայնըն այս անգամ ավելի բարձր էր:
Միսաքի ձախ աչքից մի մեծ արցունքակաթիլ գլորվեց, բայց աչքը չըթարթեց: Հայրը մոտեցավ նրան, շոյեց գլուխն ու ավելի մոտիկից նայեց աչքերին: Հետո հոնքերը բարձրացրեց, որովհետև այդպես էր անում միշտ, երբ հուզվում էր:
— Ամենակարևորն է,— ասաց նա,— որ թուղթը հանձնելիս ժպտաս: Հասկանո՞ւմ ես, պետք չէ, որ ապուշի տեսք ունենաս:
Միսաքի շուրթերը ձգվեցին, ու կոկորդում ինչ-որ բան պինդ-պինդ քերելով ներս գնաց:
Հայրը ձեռքով թփթփացրեց նրա ուսին ու հրեց դեպի դուռը:
Մուտքի դռան մոտ Միսաքը տրորեց աչքերը:
— Մեռնել եմ ուզում,— շշնջաց նա:
—Արի,— քաշեց թևից հայրը, և նըրանք սուզվեցին դժոխային փողոցի մեջ, որը տանում էր մի այլ փողոց, որտեղից նրանք պիտի նստեին տրոլեյբուս, ու գընային մեռնելու: Փողոցները ամայացել էին: Մայթերը, ծառերը և մանավանդ շենքերը չգիտես թե ուր էին կորել, ու Միսաքը աչքը չէր հեռացնում դիմացից քայլող շան թաթերից, որի տերը շորթիկ էր հագել: Միսաքը հիշեց իր տեսած շըներին, և նրանցից ոչ մեկի թաթերը նըման չէին այս մեկի թաթերին: Իսկ տերը երևի լողափից էր գալիս: Միսաքը մտածեց՝ վատ չէր լինի մեռնելուց առաջ լողալ: Պատկերացրեց հորը՝ շորթիկով, ու իրեն՝ հոր կողքին, վզին պարան կապած, ու պարանը հոր ձեռքից ոչ մի կերպ ցած չի ընկնում: Եվ ինքը պարանն անընդհատ ձգում է, իսկ հայրը նրա շարժումներին համաչափ՝ ձեռքը ետ ու առաջ է տանում, որ չցավեցնի սիրեցյալ որդու վիզը: Եվ աշխարհը Միսաքի համար հանկարծ դատարկ ու անիմաստ դարձավ: Եվ այն շենքերն ու փողոցները, դըրանցից հետո եղած փողոցներն ու շենքերը, որոնք չգիտես թե ուր էին կորել, դարձան դատարկ ու ատելի:
Թիմանցիների փողոցում էին, և հայրը

ՎԱՐԴՈՒՀԻ ԳՐԻԳՈՐՅԱՆ

# «15.03.1986թ.: Ես՝ Միսաք Գրիգորյան...»

Նկարը՝ ԱՐՏԱԿ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

կանգնեց Գոռենց շենքի մուտքի մոտ:

— Կբարձրանաս,— ասաց նա,— եթե մայրը դուրս գա, թուղթն անմիջապես նրան կհանձնես: Եթե ինքը դուրս գա...

Միսաքը գլխով արեց: Հայրը շոյեց նրա գլուխն ու նայեց աչքերի մեջ:

— Ես գիտեի, որ դու շատ բաներ արդեն հասկանում ես,— ասաց նա:

Հետո նա դանդաղ քայլերով գնաց դեպի մոտակա կրպակը: Թուղթը սեղմել էր ափի մեջ ու նայում էր վերև, որտեղ տանիքներն էին: Այդպիսով նա ուզում էր մոռանալ իր վիշտը: Եվ չէր ստացվում: Ո՞ւմ է պետք անվերջ նայել տանիքներին, որոնցից ոչ մեկը ցած չի ընկնում: Միսաքը թուղթը սեղմել էր ափի մեջ ու նայում էր Թամանցիների փողոցին, որի ծայրը չէր երևում: Մայթերը, ծառերն ու շենքերը չգիտես թե ուր էին կորել, իսկ տանիքները կախվել էին վերևից: Միսաքը նայեց Գոռենց շենքի մուտքին, որտեղ աստիճաններն էին և մոխրագույն պատերը, մի քանի քայլ արեց, հետո անընդհատ քայլում էր շենքի շուրջը:

Միսաքը թուղթը պինդ սեղմեց ափի մեջ, դրեց գրպանը ու աչքերը փակեց: Ու քայլեց: Հետո հնիհն վազում էր աներևույթ մայթերով: Թամանցիների փողոցը վերջ չուներ, իսկ Միսաքը շնչակտուր էր լինում, և աչքերի առջև մթնում էր: Նա վազում էր կորած ծառերի ետևից, բայց փողոցը վերջ չուներ, և Միսաքը հասավ մի կրպակի, որի մոտ կանգնած էր հայրը: Ամեն ինչ այնքան անիմաստ էր, որ նա միայն ապուշի տեսք ընդունեց: Հայրը ծալեց ձեռքի ամսագիրը ու նայեց Միսաքին: Միսաքը ապուշ էր կտրել:

— Դե, պատմիր,— ասաց հայրը:

ԹԱԴԵՎՈՍ ՏՈՆՈՅԱՆ

# Ապրակող ճեղքի երկու երեսը





Լուսանկարները՝ ԶԱՎԵՆ ԽԱՉԻԿՅԱՆԻ

Նկատե՞լ եք, երբ ինչ-որ բան մեծահասակներին դուր չի գալիս, նրանք սովորաբար ասում են. «Իսկ մեր ժամանակ...»: Հայրս, օրինակ, պատմում է, որ երբ ինքն սկսել է դպրոց հաճախել, առաջին դասարանում նստելու տեղ չլինելու պատճառով, իրեն միանգամից երկրորդ դասարան են տարել, և ինքը առաջին դասարան չի ունեցել, այդպես էլ սովորել ու փոխադրվել է հաջորդ դասարան: Թուղթ ու մատիտ էլ դժվարությամբ են ճարել, ամբողջ դասարանին մեկ-երկու գիրք է հասել, պայուսակի փոխարեն տոպրակներ են օգտագործել, բայց աշակերտների մեծ մասը լավ սովորելու ցանկություն է ունեցել: Հայրս ինձ չի խրատել, միայն նկարագրել է իր դպրոցական տարիները, ու ես այդ փոքրիկ նկարագրությունները ինքս եմ ինձ համար խրատ ու խորհուրդ դարձրել: Իհարկե, կան ծնողներ էլ, որոնք անընդհատ խրատում ու խրատում են, իսկ փոքրերը դժկամորեն լսում են կամ էլ ձանձրացած ու նեղացկոտ ընդհատում նրանց: Եվ շատ քիչ դեպքերում են մեծերը փոքրերի հետ գրույցի բռնվում՝ ինչպես հավասարը հավասարի: Դպրոցներում նույնպես ավելի հաճախ այս երևույթն է նկատվում ուսուցիչների ու ա-

շակերտների միջև: Ուսուցիչները էլ են սիրում աշակերտներին հանդիմանել՝ «իսկ մեր ժամանակ...», և սկսում են պատմել, թե իրենց ժամանակ ամեն ինչ այլ էր, կարգ ու կանոն կար, չնայած պայմանների սղությանը՝ իրենց թույլ կըտայի՞ն դպրոց մտնել այդօրինակ ըզգեստներով, հագնում էին համազգեստ (իհարկե, հնարավորության դեպքում), ուսուցիչների հետ գնահատականի համար չէին վիճում, թեկուզ ապտակ «ուտեին»՝ ծպտուն դուրս կգա՞ր... Բայց իսկապես, սիրելի ուսուցիչներ, իսկ ինչպե՞ս էր ձեր ժամանակ, դուք ինչպե՞ս էիք վերաբերվում ձեր ուսուցիչներին:

— Աշակերտական իմ կյանքն ինձ համար հեքիաթ է ոչ միայն այժմ՝ տարիների հեռավորությունից: Ես այն ժամանակ էլ այդպես եմ կարծել: Ուսուցիչներս ինձ համար բոլորից տարբերվող, առանձնահատուկ մարդիկ են եղել, որոնց խոսքը, վարքագիծը քննարկման ենթակա չեն եղել: Նրանք ինձ թվացել են առօրեականից բարձր կանգնած մարդիկ, որոնցից այն ժամանակ ավելին չեմ պահանջել, ինչ ինձ համար արել են: Դա թերևս սերընդի հոգեբանությամբ է բացատրվում:

Լենինականի քաղաքի մաթեմատիկայի թեքումով գիշերօթիկ միջնակարգ դըպրոցի հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի Մարիետա Խաչատրյանի այս խոսքերի մեջ չափազանցություն չկա: Թերևս... ո՞վ գիտե, նայած սերունդի համար: Անձամբ ես պատկանում եմ աշակերտական այն սերնդին, որի համար շատ ուսուցիչներ, իրոք, առօրեականից բարձր են թվացել, թեև իմ դպրոցական ընկերների մեջ էլ արդեն կային այնպիսիները, որոնք իրենց ուսուցիչներին վերաբերվում էին ոչ որպես վերերկրային էակների: Սա էլ թերևս սերնդի հոգեբանությամբ է բացատրվում: Սակայն, ինչպես հաճախ նշում են շատ ուսուցիչներ, այժմյան աշակերտության վերաբերմունքըն իրենց նկատմամբ շատ է հեռու ակնածանք կոչվելուց: Բայց այս երևույթի մեջ, կարծում եմ, որ չպետք է միայն բացասականը տեսնել, քանի դեռ այդ վ ի ճ ա կ ն իր տեղը չի զիջել անտարբերությանը, ամենասովորական վերաբերմունքին, երբեմն նույնիսկ քամահրանքին: Մանավանդ՝ մեր ժողովրդի համար ուսուցիչը դարեր շարունակ եղել է սովորական մարդկանցից բարձր կանգնած անհատ, ավելին՝ սուրբ, ինչպես Կորյուն վարդապետի համար իր ուսուցիչ երանելի Մեսրոպ Մաշտոցը: Եվ աշակերտը ինքն էլ ցանկացել է ուսուցիչ դառնալ, որովհետև նրան միշտ ձգել է այն մաքուր ու անկեղծ հարաբերությունը, որ ստեղծվել է իր և իր ուսուցչի միջև, այն զգացողությունը, որ ինքդ էլ ուզում ես քո իմացածը կիսել մարդկանց հետ, նվիրվել նրանց: Մարիետա Խաչատրյանի աշակերտներին (և ոչ միայն նրանց) կհետաքրքրի իրենց ուսուցչուհու կարծիքն այս մասին ևս. «Երբ ավարտվում է աշակերտական կյանքը, թվում է, թե դա մարդու կյանքի ամենամեծ կորուստն է, սակայն երբ աշակերտն ինքն էլ դառնում է ուսուցիչ, նրա համար յուրահատուկ ձևով շարունակվում է դպրոցական կյանքը, և միայն այդ ժամանակ նա զգում է, որ դժվար ու լավ է ուսուցիչ լինելը: Լավ է, եթե համոզված ես, որ այն քեզ համար ոչ թե աշխատանք է, այլ նվիրում, որով դու իրոք ծառայում ես ժողովրդիդ: Աշակերտներս ինձ սիրում են, որքան զգացել եմ, լավ են վերաբերվում: Ուսուցիչը պետք է խիստ ու պահանջկոտ լինի, բայց՝ ներողամիտ, սիրող և հոգատար: Այդ դեպքում վատ վերաբերմունք չի կարող ծագել»:

Իմ խոսքը, սակայն, միակողմանի կըստացվի, եթե ուսուցիչ-աշակերտ փոխհարաբերությունը քննենք միայն բարոյական բարձր արժեքների վկայակոչմամբ: Բացի այդ՝ իմ ընթերցող աշակերտներից չեմ ուզում լսել. «Էլի սկսեցին, էլ բան չունեն ասելու, ամեն անգամ՝ Մեսրոպ Մաշտոց ու Կորյուն, ինչքա՞ն կարելի է, իսկ այսօ՞ր...»: Ես հասկանում եմ ձեզ, երեխաներ, մեր դպրոցներում մինչև այսօր ավելի շատ բարոյական քարոզները են «հարգի» եղել, մենք ավելի շատ բարձըր գաղափարների քարոզով ենք կրթվել, քան այդ գաղափարներին հասնելու կոնկրետ գործնական միջոցների իմացությամբ: Ես վստահ եմ, որ դուք ավելի քիչ չեք սիրում Մաշտոցին ու Կորյունին, քան ձեր ուսուցիչները: Կարծում եք, թե ձեր ուսուցիչները չգիտե՞ն, որ այսօրվա կյանքում կան այնպիսի երևույթներ, որոնք ձեզ ստիպում են այլ կերպ նայել աշխարհին: Օրինակ՝ ահա թե ինձ ինչ է պատմում Գորիսի շրջանի Ծինուհայր գյուղի միջնակարգ դպրոցի ուսուցիչ Վաչագան Մկրտչյանը. «Մի անգամ աշակերտներիցս մեկն ինձ հարցրեց, թե որքան է իմ աշխատավարձը: Հարցն ա-

ռակնկալ էր, ու դժվարությամբ պատասխանեցի: Պատասխանիցս հետո նրա դեմքին հեշտ էր գտնել հիասթափության աղավաղված ժպիտը: Հետո օրինակ բերեց մի ծանոթ գյուղացու, որը շրջանի գյուղերում շրջելով ինչ-որ բան է վաճառում, և որ անցյալ տարի այդ գյուղացին մի ավերակ «Մոսկվիչով» էր, իսկ այս տարի՝ փառահեղ «քսանչորսով»: Իսկ իմ այդ աշակերտի հարցին նախորդել էր մեր զրույցը լավ սովորելու անհրաժեշտության մասին»:

Սիրելի դպրոցականներ, դուք էլ երևի շատ լավ հասկանում եք, որ ընկեր Մըկրտչյանի համար անչափ դժվար էր այդ պահին: Չէ՞ որ մինչև ուսուցիչ դառնալը նա աշխատել է լավ սովորել դպրոցում, ընդունվել ու ավարտել ինստիտուտը, քննություններ հանձնել զանազան առարկաներից, գիշերներ լուսացնել գրքերի առաջ: Եվ հանկարծ նրա աշակերտը բացահայտորեն ակնարկում է, որ այդ ամենը բոլորովին էլ ոչ առաջնային կարևորություն ունի: Բայց ամեն ինչ շատ ավելի խորն է, քան առաջին հայացքից է երևում: Ուստի, սիրելի աշակերտներ, ես ուզում եմ պատասխանել ընկեր Մըկրտչյանի փոխարեն: Կան մարդիկ, որոնք գերադասում են գրքերի հետ աշխատել, ռոբոտների ու բարդագույն մեքենաների, ուսումնասիրել տիեզերքը, և կան այնպիսիները, որոնց համար ամեն ինչ միևնույն է, միայն թե շատ փող վաստակեն: Իհարկե, փող վաստակելն ամոթ չէ, սակայն մարդը պետք է կարողանա չանտեսել իր ներքին, հոգեկան մղումները, որպեսզի իր աշխատած փողը ոչ միայն ռուբլի ու կոպեկ կոչվի, այլև՝ վաստակ: Իհարկե, ինչպես ասում են, հաճախ կյանքն ավելի ուժեղ է լինում: Եվ որքան էլ տարօրինակ է, հենց այդ պատճառով էլ, ինձ այդպես է թվում, դուք պետք է աշխատեք կյանքը դարձնել այնպիսին, որ ավելի բարձր ու թանկ գնահատվի առաջին հերթին խելացի մարդու աշխատանքը, այն աշխատանքը, որը չափվում է ոչ միայն ռուբլիներով, այլ նաև՝ վաստակով, այսինքն՝ առաջին հերթին շրջապատի մարդկանց օգնելու աստիճանով: (Պետք է զգուշանալ. ես էլ սկսեցի խրատել տալ): Խելացի մարդ դառնալու համար նաև սովորել է պետք: Իսկ դուք վերջին տարիներին «սովորելու հետ այնքան էլ գլուխ չունեք»: Սա միայն իմ և ընկեր Մկրտչյանի կարծիքը չէ, այլ շատ ու շատ ուսուցիչների, որոնց թվում նաև Երևանի № 7 դպրոցի հայոց լեզվի և գրականության ուսուցչուհի Անուշ Փոլադյանի. «Չեն սովորում, չեն սովորում ու վերջ»,—ասում է նա մեր զրույցի ժամանակ, և նրա ինչ-որ տեղ նաև հուսահատական խոսքերի մեջ չես կարող չզգալ նաև աշակերտների և ընդհանրապես դպրոցի նկատմամբ սրտացավ վերաբերմունքը: Եվ մեր զրույցին զուգահեռ՝ ես հիշում եմ աշակերտությանս տարիներին (70-ական թվականներ) ոչ քիչ թվով ուսուցիչներից լըսած հետևյալ արտահայտությունը. «Չեք սովորում՝ ավելի վատ ձեզ համար: Եթե բոլորդ գիտնական ու ղեկավար դառնաք, բանվորություն ո՞վ է անելու»: Ոչ, ես այն ժամանակվա ուսուցիչների անհոգ վերաբերմունքը չէ, որ ուզում եմ շեշտել: Եվ հետո՝ նույն ուսուցիչներն այժմ էլ են ուսուցիչներ, 70-ական թվականներից հո քարոսուն սար ու ձոր չի՞ բաժանում: Եվ ոչ էլ ուզում եմ ասել, թե 70-ականների աշակերտությունն ավելի վատ կամ լավ էր սովորում, քան՝ ներկայիս: Մեր դասարանի աշակերտների ուղիղ կեսը բարձրագույն ուսումնական հաստատություն ընդունվեց, քառորդ մասը սովորեց տեխնիկումներում և միայն վերջին քառորդը 10-րդը ավարտելուց հետո ոչ մի տեղ չգնաց սովորելու, սկսեց աշխատել: Ուղղակի մեր ժամանակ բանվորական կադրեր.ի պակաս էր զգացվում, իսկ հիմա՝

— Ինձ անհանգստացնում է այն,—շարունակում է ընկեր Փոլադյանը,— թե վաղը, մյուս օրը ով պետք է մեր երկիրը կառավարի, ովքեր պետք է գործարաններ ու հաստատություններ ղեկավարեն, կանգնեն բարդագույն մեքենաների կառավարման վահանակների առջև, եթե այսքան քիչ են սովորում, չէ՞ որ քանի գնում, քաղաքակրթությունն ավելի մեծ պատրաստվածություն ու գիտելիքներ է պահանջում: Լավ սովորող երեխաներ կան, բայց ինձ թվում է՝ քիչ են:

— Պատճառնե՞րը,— հարցնում եմ ես:

— Գիտե՞ք, ոչ միայն պարզապես չուզենալն է, այլ ֆիզիկապես էլ չեն հասցընում: Այնքան եմ ցավում նրանց համար, հոգնում են, ծրագրերը շատ են ծանրաբեռնված, մենք՝ ուսուցիչներս էլ, հաճախ ծրագրի սխեմատիզմին տուրք ենք տալիս և աշակերտներից պահանջում անել գուցե ոչ այնքան պարտադիր, սակայն

չլատող «վարժանքներ». ՍՍՀՄ պատմության կոնսպեկտ, սովետական իրավունքի կոնսպեկտ (՞) և այլն: Երեխաները ֆիզիկապես թույլ են, ուժ չունեն, հոգնում են, իմ կարծիքով՝ մեր քաղաքի էկոլոգիական աննախիթար վիճակը ևս իր բացասական խորը հետքը թողնում է երեխաների ուսման վրա: Այո, մենք էլ մեր հերթին ենք երբեմն արգելակում ուսման առաջադիմությունը. վերադաս մարմինները, չգիտես ինչու, իրենց դպրոցների վիճակը ճիշտ չեն ներկայացնում, թաքցնում են աշակերտության գնահատականների տոկոսային հարաբերությունները, մենք՝ ուսուցիչներս էլ մեր հերթին դիրեկտորներից ենք թաքցնում մեր դասարանի իրական վիճակը՝ հանկարծ մանկխորհրդի նիստում չասե՞ն, թե այսինչյանի դասարանի առաջադիմությունը ցածր է: Մինչդեռ այսօր արդեն անհետաձգելիորեն անհրաժեշտ է ճիշտ ներկայացնել ստեղծված վիճակը, մանավանդ որ կուսակցությունն ու կառավարությունը հատուկ ուշադրություն են դարձնում դպրոցի պրոբլեմին:

— Իսկ հատկապես աշակերտն ինչի՞ կարիք է զգում այսօր:

— Ինքնավարության,— պատասխանում է ընկեր Փոլադյանը,— պետք է աշակերտներին ավելի շատ վստահել: Դա նրանց դուր է գալիս: Մեր դպրոցում մի քանի անգամ կազմակերպվել են աշակերտական ինքնավարության օրեր: Բարձր դասարանների աշակերտներից ընտրվում են դիրեկտոր, ուսմասվարներ, ուսուցիչներ, իրենց ընկերներին իրենք են դաս տալիս, դաս հարցնում...

— Մատյանում գնահատական նշանակո՞ւմ են:

— Անպայման, եթե չնշանակեն, չեն հավատա, որ իրենց իրոք վստահել են:

— Գնահատելիս «ընկերություն» չե՞ն անում:

— Ավելի անաչառ են լինում. մի աղջիկ իմ աշակերտներից մեկին «2» էր նշանակել, ասացի՝ հիմա ինչպե՞ս եմ քառորդ փակելու, շատ կտրուկ պատասխանեց՝ թող սովորի: Եվ գիտե՞ք, աշակերտական ինքնավարության օրերին դպրոցում կարգապահությունն ավելի բարձր է լինում: Աշխատում են իրենց դիրեկտոր, ուսմասվար, ուսուցիչ ընկերներին ամոթով չթողնել, որպեսզի մենք չասենք՝ չկարողացաք:

Իրոք որ, միշտ էլ աշակերտները ցանկացել են ինքնուրույն լինել: Իսկ ընդհանրապես ինչպիսի՞ գծեր են բնութագրական այժմյան դպրոցականներին.

ՄԱՐԻԵՏԱ ԽԱՉԱՏՐՅԱՆ. «Այսօրվա աշակերտները համարձակ են, գիտակից, ունեն լայն ինֆորմացիա: Այս ամենը լավ է, չմոռանամ՝ նրանք նաև հումորի լավ զգացում ունեն (մենք էլ չմոռանանք, որ ինչպես ընկեր Խաչատրյանը, այնպես էլ նրա աշակերտները լենինականցիներ են), սակայն նրանց մեջ իշխող է միակողմանի հետաքրքրությունը, ըստ որում՝ դժվարություններից հեռու: Դատապարտելի է նրանց սպառողական հոգեբանությունը, ընթերցասիրության պակասը, ականածանքի և երկյուղածության նվազումը ուսուցիչների նկատմամբ: Բայց նրանց բնորոշ է գիտակցական հայրենասիրությունը, ազգային հպարտությունը և արժանապատվությունը»:

ԱՆՈՒՇ ՓՈԼԱԴՅԱՆ. «Դպրոցականները այսօր շատ ակտիվ են հասարակական երևույթների նկատմամբ, մեծ ինֆորմացիա ունեն: Ափսոս, որ գրքի նկատմամբ պակասում է ականածանքը, զգայուն են հատկապես կյանքի սոցիալական երևույթների նկատմամբ: Մի դեպք եմ ուզում հիշել. աշակերտներից մեկը մի օր դպրոց էր եկել ոչ թե սովորական պայուսակով, այլ բավական թանկարժեք «դիպլոմատով» ու համադասարանցի ընկերներից մեկին անզգուշորեն կոպտել էր. «Պապատ 30 ռ. չունի՞, որ քեզ համար էլ «դիպլոմատ» առնի»: Ընկերն այնքան խորն էր վիրավորվել, որ տանը նկատել էին, իմացել պատճառը, և մի քանի օրից նրա հայրն էլ էր «դիպլոմատ» գնել, իհարկե, ինչպես հետո իմացա՝ ոչ առանց «ինչ-որ տեղից կտրելու»: Եվ գիտե՞ք, ինձ թվում է՝ ճիշտ էր արել: Բանը մրցելը չէ, այլ երեխային չկոտրելը, քանի որ երեխան ոչ թե կամակորությունից էր ցանկացել «դիպլոմատ» ունենալ, այլ վիրավորանքից»:

ՎԱՉԱԳԱՆ ՄԿՐՏՉՅԱՆ. «Սովորելու նկատմամբ ցածր դասարաններում վերաբերմունքը բավական լավ է, բայց քանի մեծանում են, այնքան անտարբեր են դառնում: Նայում են շուրջբոլորն ու հասկանում, որ առանց սովորելու էլ կարելի է ապրել: Իսկ ովքեր դպրոցն ավարտելուց հետո մտադիր են սովորել, ավելի շատ ոչ թե բուն սովորելու մասին են մտածում, այլ, օրինակ՝ թե ում մոտ կարելի է մասնավոր այս կամ այն առար-

կան պարապել, ինչ ծանոթ-բարեկամի միջոցով որ ինստիտուտը, դեռ ավելի կոնկրետ՝ որ ֆակուլտետը կարող են ընդունվել: Եվ ցավալին այն է, որ հաճախ «ընդունվել» են մտադրվում այնպիսի ֆակուլտետներ ու բաժիններ, որոնք բոլորովին էլ իրենց սրտով չեն, սակայն այսպես ասած «հեռանկարային» են, և ավարտելուց հետո իրենք կարող են «եկամտաբեր» տեղերում աշխատել»:

Նկատո՞ւմ եք, սիրելի դպրոցականներ, երեք ուսուցիչների պատասխաններում ինչ-որ ընդհանրություն ու նմանություն կա: Դա բնական է. նրանք խոսում են միևնույն սերնդի մասին: Եվ տեսնո՞ւմ եք, նրանք ձեզ այնքան էլ սոսկ վերացական բարձր գաղափարներով չէ, որ մոտենում են, նրանք լավ են տեսնում ձեզ շրջապատող աշխարհը, գիտեն, թե որքանով և ինչ կերպ են այդ աշխարհի ստվերները ընկնում ձեր արևոտ մանկության բակը: Եվ թող չթվա, որ ձեր չսովորելու պատճառները նրանք միայն ձեր մեջ են որոնում: Գուցե նրանք ձեզ հետ դեռ չեն կարողանում այդ պատճառների մասին բարձրաձայն խոսել, սակայն գիտեն, որ դուք զգայուն եք կյանքի «սոցիալական» կոչվող երևույթների նկատմամբ: Բայց նաև փաստն այն է, որ ուսուցչական կոլեկտիվներում, չգիտես ինչու, այս խնդրի վրա պատշաճ ուշադրություն չեն դարձնում, դեռ ավելին՝ աշխատում են աշակերտներից թաքցնել կյանքի սոցիալական անհարթությունները: Խոսքը, որ այս պահին ուզում եմ մեջ բերել, ոչ մի աշակերտից չեմ լսել, սակայն հիշելով մեր ուսուցիչների քիչ առաջ ասածը, իմ մեջ կարծես խոսել սկսեց աշակերտի հավաքական կերպարը.

«Ես ամեն ինչ տեսնում եմ, մենք դեռ շատ ենք երիտասարդ, մեր աչքերը սուր են, ես ամեն ինչ գիտեմ, իհարկե, գուցե պատմության դասագրքից շատ թվականներ անգիր չեմ արել, քերականության դասագրքի ոչ բոլոր կանոններն եմ սերտել, սակայն ԳԻՏԵՆԱԼ ամենևին էլ դա չի նշանակում: Կարո՞ղ եք ասել, թե ինչ է նշանակում ԳԻՏԵՆԱԼ: Օրինակ՝ ես գիտեմ, որ մեր դասարանի Գագիկը հայր չունի, և նրա մայրը ստիպված երկու տեղ է աշխատում, ու մայր ու որդի իրար շատ քիչ են տեսնում, նույնիսկ կարոտում են միմյանց: Օրինակ՝ ես գիտեմ, որ մեր դասարանի Եղիշեի հայրը վարորդ է և սպասարկում է ինչ-որ մի հիմնարկի պետի: Եղիշեն շատ հաճախ հորն օգնելու համար ինքն է մեքենան լվանում, ոտնատակի ռետինները մաքրում: Ես գիտեմ նաև, որ մեր դասարանի Արսենի հայրը ինչ-որ հիմնարկի պետ է, և հատկապես անձրևոտ օրերին Արսենը դասից հաճախ իր հորն սպասարկող մեքենայով է տուն վերադառնում. անձրևի տակ չթրջվելու համար, թաց, կեղտոտ կոշիկներով իրեն շտապ մեքենայի մեջ է գցում: Իսկ գուցե այդ վարորդին էլ իր դպրոցական տղան է օգնում մեքենան լվանալիս, ոտնատակի ռետինները մաքրելիս: Իհարկե, Եղիշեի հոր պետը Արսենի հայրը չէ, սակայն ինչո՞ւ, ինչո՞ւ է ինձ անընդհատ թվում, որ Եղիշեն է մաքրում Արսենի ցեխոտած ոտնատակի ռետինները: Այո, այս մեկը չգիտեմ: Լսո՞ւմ ես, Արսեն, ճիշտ է ասում լենինականցի ուսուցչուհի ընկեր Մարիետա Խաչատրյանը, թե «դատապարտելի է նրանց սպառողական հոգեբանությունը», և մի նեղացիր ուսուցչից, ապտակը երկու երես ունի, մեկը վիրավորանքի, մյուսը՝ սթափեցնելու: Ուսուցիչը «ապտակում է» իր աշակերտին միայն իր ձեռքի սթափեցնող կողմով: Մեզ հարգեցին, և ֆիզիկական պատիժը դպրոցում արգելեցին: Սակայն ես կարծում եմ, որ մի ապտակի իրավունքը ուսուցչից չպետք է վերցնեին: Թե չէ՝ մենք մեր չափը հաճախ անցնում ենք: Իհարկե, ճիշտ է նկատել Ծիծեռնակաբերդ գյուղի դպրոցի ուսուցիչ ընկեր Մկրտչյանը, որ մենք հասկացել ենք, թե առանց սովորելու էլ կարելի է ապրել: Ճիշտ է, առանց սովորելու՝ այո, կարելի է, բայց առանց այս բաները գիտենալու՝ ոչ, ապրել չի կարելի: Ես գիտեմ, օրինակ, որ այս սոցիալական տարբերություն կոչվածը գոյություն ունի նաև ժամանակների միջև, տրոլեյբուսներով դպրոց գնացող մեր հայրերի ու աշակերտական պայուսակներով դպրոց գնացող մեր սերնդի միջև: Ես գիտեմ նաև, որ մեր սերնդի մեջ էլ ուրիշ «սերունդ» է առաջացել՝ պայուսակից ամաչող, «դիպլոմատ» բռնող «սերունդ», և նրանց հետ պետք է ոչ թե մրցել, այլ… այլ… Այո, սա արդեն ես չգիտեմ… ինքներդ գուցե որոշեք…»:

«Հ. Գ. սիրելի ուսուցիչներ, դուք չե՞ք նկատել, որ մենք մի քիչ էլ փիլիսոփայություն սովորելու կարիք ունենք, որպեսզի կարողանանք գիտենալ, թե ինչ է ՉԳԻՏԵՄ-ը»:

ՎԱՐՈՒԺԱՆ ԽԱՍՏՈՒՐ

## ՏՐԻՈԼԵՏՆԵՐ
## «Ժամանակագրություն»
## ՇԱՐՔԻՑ



•••

Այգուն, այգուն ոսկեվորիկ
Արեգակն է լողում զվարթ,
Գույներն են պարզ ու անաղարտ
Այգուն, այգուն ոսկեվորիկ:
Բիլ երկնքից ծաղկաթերթիկ
Ջուլալվում է օրը հանդարտ,
Այգուն, այգուն ոսկեվորիկ
Արեգակն է լողում զվարթ:

•••

Թափվել է խեժը լույսի և շաղախվել հողի հետ,
Ժամանումի հրաշքից սաղարթներն են բոցկլտում,
Ժպտում են ծիլ ու ծաղիկ արթնացումի զմրուխտում,
Թափվել է խեժը լույսի և շաղախվել հողի հետ:
Նրբագեղ ու հոլանի աղջկա պես սեթևեթ
Արեգակն է պար բռնել ողկույզների հակինթում,
Թափվել է խեժը լույսի և շաղախվել հողի հետ,
Ժամանումի հրաշքից սաղարթներն են բոցկլտում:

•••

Վերջին շողն են ըմբոշխնում տերևները լռելյայն,
Մթնշաղի մետաքսե քղանցքներն են ծածանվում,
Լուրթ աչքերով մի թախիծ շղարշներ է ածանցում,
Վերջին շողն են ըմբոշխնում տերևները լռելյայն:
Եվ հպանցիկ, փրփուրե ճախրանքներով սիգապանծ
Երազումս փիրուզի ջրահարսն է թևածում,
Վերջին շողն են ըմբոշխնում տերևները լռելյայն,
Մթնշաղի մետաքսե քղանցքներն են ծածանվում:

•••

Թոնիր է ողջ երկինքը՝ թրծած կավից ծիրանի,
Եվ խմորի գնդի պես արեգակն է ծավալվում,
Ալրագանգուր ամպերը հայտնություն են վերծանում,
Թոնիր է ողջ երկինքը՝ թրծած կավից ծիրանի:
Տարածելով խնդություն հեղեղի մեջ անհունի՝
Թխվում է հացը լույսի միջօրեի ծիծաղում:
Թոնիր է ողջ երկինքը՝ թրծած կավից ծիրանի,
Եվ խմորի գնդի պե։ արեգակն է ծավալվում:

•••

Գիշերի մեջ քամվում է լույսի կաթիլ նռանի՝
Գաղջ խավարում բացելով գույների հիր շատրվան,
Եվ ամպերը քանդում են գիսակները ծփծփան.
Գիշերի մեջ քամվում է փոքրիկ կաթիլ նռանի:
Գալարումով մի վերջին մութը ճգնում է ունայն՝
Մառ վարագույրը նետում լուսաբացի
խորանին,
Գիշերի մեջ քամվում է փոքրիկ կաթիլ նռանի՝
Գաղջ խավարում բացելով գույների հիր շատրվան:



ԱՍԱՏՈՒՐ ՓԱՇԱՅԱՆ



# ԼԻՑՔԵՐԸ ԲՆԱԿԱՆ ԵՎ ՍԻՆԹԵՏԻԿ ԳՈՐԾՎԱԾՔՆԵՐՈՒՄ

Դեռ հին Հունաստանում և Հռոմում մարդկանց հայտնի էր այն փաստը, որ գործվածքները, որոնցից պատրաստում էին հագուստներ, ինչ-որ լիցքեր են կրում իրենց մեջ: Այսպես, մետաքսից և ատլասից կարված վերնազգեստները՝ պարեգոտները, մրջյունների նման «կծում» էին մարմինները:

Ինչպե՞ս ազատվել այդ անցանկալի երևույթից:

Նախ պարզենք գործվածքների էլեկտրականացման երևույթը:

Հայտնի է, որ բոլոր նյութերն օժտված են այսպես կոչված օհմական դիմադրությամբ: Սակայն ինչքան էլ որ մեծ լինի տվյալ նյութի դիմադրությունը, այն իր միջով որոշակի էլեկտրական հոսանք կանցկացնի: Բնական և սինթետիկ մանրաթելերի տեսակարար մակերևութային դիմադրությունը մոտ մեկ միլիարդ օհմի է հավասար:

Պարզվել է, որ եթե տվյալ նյութը օժտված է մակերևութային փոքր դիմադրությամբ, ապա շփման ժամանակ գոյացած լիցքը շատ արագ տարածվում, ցրվում է, և այդ նյութից պատրաստված հագուստը հագնողին տհաճություն չի պատճառում: Իսկ երբ տվյալ նյութի դիմադրությունը մեծ է, շփման ժամանակ լիցքերը կուտակվում են: Փորձնական տվյալները վկայում են, որ մեծ շփումների դեպքում լիցքերը կարող են կուտակվել այն աստիճան, որ լիցքաթափման ժամանակ ուժեղ կայծեր բռնկվեն, որոնք հաճախ լուրջ վտանգների պատճառ կարող են դառնալ: Ուրեմն, եթե մեծացնենք տվյալ նյութի էլեկտրահաղորդականությունը, կխուսափենք այդ տհաճ կայծերից: Իսկ ինչպե՞ս: Իհարկե, կարելի է մետաղական հաղորդալարը ներհյուսել այս կամ այն մանրաթելին և ստանալ փոքր մակերևութային դիմադրությամբ մանրաթել: Կարելի է նաև մանրաթելի մակերեսը պատել մետաղի շատ նուրբ շերտով: Նշված երկու մեթոդներն էլ կիրառվում են որոշակի, հատուկ բնագավառներում, սակայն ամբողջ բարդությունն այն է, որ նշված ճանապարհով ստացված թելերը կորցնում են իրենց սեփական արժեքավոր հատկությունները՝ ճկունությունը, էլաստիկությունը, ամրությունը:

Գոյություն ունի լիցքերը վնասազերծելու մեկ ուրիշ եղանակ ևս: Մոսկվայի քիմիական նուրբ տեխնոլոգիայի ինստիտուտի պրոֆեսոր Գուլը մոտ քսան տարի առաջ կատարեց հետևյալ փորձը: Քիմիական ճանապարհով ստացված պոլիմերային մանրաթելը նա խառնեց արծաթի, ալյումինիումի, նիկելի և ուրիշ մետաղների նուրբ փոշու հետ և հատուկ մշակումներից հետո ստացավ էլեկտրահաղորդ պոլիմերային մանրաթել: Այսպիսի մանրաթելերի մակերևույթներին շփման ժամանակ լիցքեր չեն կուտակվում: Սակայն այստեղ դարձյալ մանրաթելի մեխանիկական հատկությունների հարցը մնում է չլուծված: Ստացվեց լիցքեր չկուտակող մանրաթել, բայց երբ ուսումնասիրվեց նրա մեխանիկական հատկությունները, պարզվեց, որ շատ դեպքերի համար այն անկիրառելի է:

Դարձյալ նույն հարցը: Ինչպե՞ս ազատվել էլեկտրական լիցքերից:

Իսկ եթե ներկե՞նք այս կամ այն նյութից պատրաստված գործ-

վածքը: Գործվածքների ներկումը հավանաբար քիմիական ամենահին տեխնոլոգիան է, որ մարդը կիրառել է քաղաքակրթության արշալույսին: Հետաքրքիր է այն փաստը, որ ներկման համար կիրառվող նյութերը հիդրոֆիլ են, այսինքն՝ ջրասեր: Կլանելով օդի խոնավությունը, ներկանյութը տրոհում է խոնավությունը պայմանավորող ջրի մոլեկուլները լիցքավորված իոնների, որով և ապահովվում է գործվածքի բարձր էլեկտրահաղորդականությունը: Այսպիսով՝ անցյալի քիմիկոս-ներկարարները անգիտակցորեն բրդյա և մետաքսյա թելերի համար ընտրել են այնպիսի ներկանյութեր, որոնք խանգարել են շփման ժամանակ լիցքերի կուտակվելուն: Երբ մենք կարդում ենք հին աշխարհի վերաբերյալ պատմական վկայություններ, տեսնում ենք, որ պալատական անձանց հագուստների գույները վառ կարմիր են, ծիրանագույն, կապույտ կամ մանուշակագույն: Այդ նկարագրություններում գրեթե չենք հանդիպում սպիտակ գույնի հագուստների:

Մոսկվայի Կարպովի անվան ֆիզիկաքիմիական ինստիտուտի գիտաշխատողները այս ուղղությամբ կատարել են հետևյալ գիտափորձը: Այսպես կոչված պոլիամիդային և պոլիացետատային մանրաթելեր պատրաստելու ժամանակ նրանք ռեակցիոն զանգվածին ավելացնում են այնպիսի քիմիական միացություններ, որոնց մոլեկուլներում կան լիցքերը վնասազերծող խմբավորումներ: Ստացվում է մանրաթել, որի քիմիական բաղադրությունը և կառուցվածքը ապահովում է տվյալ մանրաթելի բարձր էլեկտրահաղորդականությունը: Սակայն լավսանը և նեյլոնը դեռևս զուրկ են չլիցքավորվելու հատկությունից:

Բոլոր այն նյութերը, որոնք այս կամ այն չափով կասեցնում են մանրաթելերի լիցքավորվելը, ընդհանուր անունով կոչվում են անտիստատիկներ: Այսպիսով կարելի է ընդհանրացված ձևով ասել, որ անտիստատիկների պրոբլեմը բնական և սինթետիկ պոլիմերային նյութերի մակերևույթների վրա կուտակված էլեկտրական լիցքերի կուտակման դեմ պայքարի խնդիրն է: Այդ պրոբլեմը եղել է և մնում է ուժի մեջ այսօր էլ: Չէ՞ որ բնական և հատկապես սինթետիկ մանրաթելերից միայն գործվածքներ չեն պատրաստում: Այդ մանրաթելերը լայնորեն կիրառվում են արդյունաբերության, գյուղատնտեսության, ինչպես նաև մեր կենցաղի ամենատարբեր բնագավառներում:

Շփման ժամանակ էլեկտրական լիցքերի կուտակումը գործվածքներում շատ հաճախ հրդեհի պատճառ է դարձել:

Հայտնի են դեպքեր, երբ էլեկտրոնային հաշվիչ մեքենան տվել է անվստահելի տվյալներ, երբ այդ մեքենաների կողքին եղել են կանայք: Պարզվել է, որ կանանց հագուստների վրա կուտակված էլեկտրական լիցքերը խանգարել են մեքենայի հստակ ու անխափան աշխատանքը:

Երբեմն լավ անտիստատիկի բացակայությունը անթույլատրելի է դարձնում արտադրության լրիվ ավտոմատացումը: Այնպես որ, անտիստատիկների պրոբլեմն ունի նաև ժողովրդատնտեսական մեծ նշանակություն:

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# Ի՞նչ է կինեմատոգրաֆը



ԳԼԱՏԵՈՍ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

Արվեստի այս ձևն իր առջև դրել է պարզ ու սովորական մի խնդիր՝ շարժման մեջ ներկայացնել գործողությունները՝ շարժման հաջորդական պատկերների միջոցով: Այս խնդիրը լուծվում է երեք հիմնական գործոնների օգնությամբ՝ ա) կինոապարատի մեխանիզմի օգնությամբ տեղաշարժվող նեգատիվ կինոժապավենին նկարել մարդկանց, առարկաների, բնանկարների անընդմեջ շարժման փուլերը, բ) նկարահանված նեգատիվը հայտածելուց հետո տպել պոզիտիվ ժապավենի վրա, նորից հայտածել, երևակել, ապա ցուցադրող (պրոյեկցիոն) ապարատի միջոցով ուղղել էկրանին, գ) կադրից կադր թռիչք ստեղծող մեխանիզմի

շնորհիվ, ինչպես նկարահանման, այնպես էլ ցուցադրման ժամանակ առարկայի պատկերի շարժման մի փուլը անըկատ փոխարինել մյուսով: Ժապավենի տեղաշարժը թեև հավասարաչափ է, բայց ոչ անընդմեջ ու սահուն, այլ թռիչքաձև, ընդհատումներով: Հակառակ դեպքում՝ պատկերները էկրանին հստակ և «ստատիկ» չէին երևա, կամ կնկատվեր շարժման փուլերը (կադրերը) իրարից բաժանող միջկադրային գիծը, ինչպես երբեմն այն նկատում ենք հեռուստացույցի էկրանի խաթարման դեպքում: Իսկ ինչպե՞ս է, որ ֆիլմը դիտելիս անընդհատ են մնում շարժման իրար հաջորդող պահերը: Կադրի փոխվելու ակնթարթին, ավտոմատ ձևով, սովորական աչքի համար աննկատ հանգչում է պրոյեկցիոն լամպը, որի ընթացքում փոխվում է կադրը, ապա նորից լամպը վառվում է: Հայտնի է, որ տեսողական հիշողության մեջ որոշ ժամանակ պահպանվում է առարկայի պատկերը, և մինչ դրա ջնջվելը, հայտնվում է շարունակությունը՝ հաջորդող կադրը: «Խոսող» կինոյում, ինչպես նկարահանման, այնպես էլ ցուցադրման ժամանակ օբյեկտիվի ետևում գտնվող պատուհանիկի առջևով մեկ վայրկյանում թռիչքաձև անցնում է 24 կադր, «համր» կինոյում՝ 16:

Լուսանկարչության հենքի վրա ստեղծված կինեմատոգրաֆն իր մեջ միավորեց արվեստների շատ տեսակներ: Կինոֆիլմը տարբեր արվեստագետների կոլեկտիվ աշխատանքի արդյունք է: Այստեղ միմյանց հետ համագործակցում են գրողը՝ կինոդրամատուրգը, բեմադրող ռեժիսորը, օպերատորը, դերասանը, կոմպոզիտորը, նկարիչը և այլ մասնագիտության ու զբաղմունքի տեր մարդիկ:

Ի տարբերություն կերպարվեստի, թատրոնի, գեղանկարչության՝ կինեմատոգրաֆը գրական երկերը, կյանքի երևույթները ներկայացնում է բնական մասշտաբներով, մատչելի, հավաստի ու ճշմարիտ չափանիշներով: Այստեղ ընդունելի չեն բեմական նեղ շրջանակն ու պայմանականությունը: Կինոյում ճշգրիտ ու բնական պետք է լինի գործողությունների միջավայրը, կերպարների արտաքին նկարագիրը, դերակատարի տարիքի համապատասխանությունն իր դերին:

Իր սյուժետային կառուցվածքով, գեղարվեստական կինոն ավելի մոտ է կանգնած դրամատուրգիային: Կինոն որպես վավերագրություն՝ փաստացի կոնկրետ իրողությունը պահպանում և ճշգրիտ, շարժուն վիճակում ներկայացնում է սերունդներին: Շնորհիվ վավերագրական ժապավենների՝ պատմական կարևոր շատ իրադարձություններ մնում են անմեռ ու կենդանի: Վավերագրական կինոն իր կերպարները ստեղծում է գլխավորապես վավերագրական կադրերի մոնտաժման շնորհիվ, որոնց զուգորդում է մեծ մասամբ հաղորդավարական տեքստ, երաժշտություն: Այն կարելի է համեմատել գրական ակնարկի, թերթային հոդվածի, ինֆորմացիայի, ֆելիետոնի և այլ տեսակների հետ:

Գեղարվեստական կինոն երևույթները պատկերելիս մեծ հնարավորություններ ունի դրանք հասցնելու իրականի աստիճանի: Այդպես է, օրինակ, պատմական ֆիլմերում, ուր շատ դրվագներ ստեղծվում են այն վայրերում, որտեղ, իրոք, ժամանակին կատարվել են պատկերվող դեպքերը: «Անձամբ ճանաչում եմ» ֆիլմում, Կամոյի՝ բանտախցից փախուստը նկարահանվեց Թբիլիսիի Մետեխի բանտում: Այս տեսարանը կարելի էր նկարահանել ավելի քիչ ծախսերով և ժամանակի կորուստով՝ Երևանում, Զանգվի ափին՝ կիրճի վրա կառուցելով դեկորատիվ շինություն: Այդ բանը չարվեց, նախ՝ բանտի կառույցն ավելի հավաստի էր և ճշմարտացի, երկրորդ՝ ոչ պակաս կարևոր էր Մետեխիի միջավայրը, մթնոլորտը, որ կօգներ Կամոյի դերակատարին՝ Գուրգեն Թոնունցին, ավելի ճշմարտացի, անմիջական ձևով, հոգեբանորեն վերապրելու իր կերտած հերոսի խռովահույզ ու բարդ հոգեվիճակը: Այս տեսարանի նկարահանման ժամանակ տեղի է ունեցել մի դիպված, անակնկալ, որն արժե ներկայացնել՝ ապացուցելու վերը նշվածը: Ինչպես հայտնի է, Սիմոն Տեր-Պետրոսյանը՝ Կամոն, բանտի հսկիչներից աննկատ սղոցում է իր շղթաները, բանտախցի լուսամուտից պարանի օգնությամբ իջնում: Հեռվում, կիրճի պռնկին, գործում են կինոնկարահանող ապարատները: Ձորում նախօրոք պետք է սպասեր ավտոմեքենան, որպեսզի վայրէջքից հետո դերակատարին տեղափոխեր նկարահանման վայրը՝ գործողությունը կրկնելու համար: Հայտնի է, որ գեղարվեստական կինոյում յուրաքանչյուր կադրը նկարահանվում է մի քանի անգամ: Վայրէջքից հետո Թոնունցին սպասող մեքենան իր տեղում չի

լինում։ Ինչպե՞ս վարվեր դերակատարը. քաղաքի միջով անհնարին էր ոտքով վերադառնալ, այն էլ՝ այդ վիճակում։ Մոտենալով բանուկ ճանապարհին, որն այնքան էլ հեռու չէր, նստում է պատահական մի ավտոմեքենա՝ նկարահանման վայր վերադառնալու նպատակով։ Գործին անտեղյակ վարորդը նկատում է խռիվամազ, բանտային հագուստով, կասկածելի արտաքինով ուղևորին և մեքենան ուղղում միլիցիայի քաղաքային բաժանմունք։

Անցնում է բավականին ժամանակ, նկարահանողները սպասում են Թոնունցին։ Միլիցիայի քաղաքային բաժանմունքում սկսվում է «փախստականի» հարցաքննությունը։ Ընդունված կարգի համաձայն՝ անծանոթից փաստաթղթեր են պահանջում։ Դերակատարը որտեղի՞ց ներկայացներ փաստաթուղթ, չէ՞ որ բանտային շորերի գրպանները դատարկ էին։ Թոնունցը սկզբում կարծում է, թե այս ամենը կատակ է, ապա զգալով իրավիճակի լրջությունը, սկսում է պարզաբանել իր ով լինելը։

Նույն ֆիլմում ծպտված Կամոյի արտասահմանից վերադառնալու դրվագը, որը էկրանում մեկ րոպե տևողություն ունի, նկարահանվել է հեռավոր հյուսիսում, Կոլա թերակղզու բքաշունչ դաշտում։ Հերոսի վերադարձը պետք է կատարվեր եղնիկներ լծած սահնակով, որի համար էլ նկարահանող խումբը մեկնել էր Մուրմանսկ։

«Հովազաձորի գերիները» ֆիլմի նկարահանման վայր ընտրվեց Կովկասյան լեռների Դոմբայի արգելանոցը։ Գործող անձինք հիմնականում երեխաներ էին։ Դերակատարներ ընտրվեցին տարբեր դպրոցներից։ Երբ ավարտվել էին նախապատրաստական աշխատանքները, ողջ խումբը մեկնեց Դոմբայի գեղատեսիլ վայրերը։ Երեխաների հետ Հյուսիսային Կովկաս տեղափոխվեցին վայրի կենդանիներ, որոնք բերված էին գազանանոցից։ Տեղ հասնելուն պես, անտառի բացատում՝ վրանների մեջ տեղավորվեցին դերակատարները, նկարահանման խմբի աշխատողները։ Մինչ նկարահանումներն սկսելը պատանի դերասանները մեծահասակներից աննկատ մտերմացել էին գազանների հետ, նրանց բաժին հանելով իրենց ուտելիքներից։

Մի անգամ խմբի անդամները, երբ ֆիլմի նկարահանման համար համապատասխան տեղեր ընտրելուց հետո վերադառնում են ճամբար, նկատում են, որ փոքրիկներից մեկը մտել է արջի վանդակը։ Իրարանցում է սկսվում, տեղ է հասնում կենդանիներին խնամողը, երեխային դուրս բերում վանդակից։ Բարեբախտաբար գիշատիչը բարյացակամ էր գտնվել և չէր հոշոտել տղային։ Մինչդեռ արջը բերված էր գազանանոցից և վարժեցված չէր։

Հաջորդ օրը նկարահանվում էր Հովազաձորում փոքրիկ բնախույզների արջի հետ հանդիպելու գործողությունը։ Ըստ սցենարի՝ փոքրիկները գազանին նկատելով՝ պետք է սարսափահար լինեին։ Սկսվեց նկարահանումը, թփի ետևից դուրս եկավ բրդոտ արջը։ Դերակատարները վախենալու փոխարեն սկսեցին քրքջալ։ Երեխաներին ահաբեկելու, վախ ներշնչելու ռեժիսորի բոլոր փորձերը ապարդյուն էին անցնում։ Սովորաբար ֆիլմերում երեխաները ոչ թե կերպարներ են ստեղծում, այլ խաղում են իրենք իրենց։ Ստիպված բեմադրողը դիմեց ահաբեկման ֆիզիկական միջոցին, հասցնելով մի ապտակ ամենից շատ քրքջացողին։ Դերակատարները «մտան կերպարի մեջ». տեսարանը նկարահանված էր։ Աշխատանքները լրիվ ավարտելուց հետո կինոխումբը որոշեց արջին թողնել արգելանոցում։ Ավտոմեքենաներով բեռնված խումբը բռնեց տունդարձի ճամփան։ Ուշ երեկոյան ողջ անձնակազմը փոքրիկ դերակատարների հետ կանգ առավ, գիշերեցին ճանապարհից ոչ հեռու անտառի բացատում գտնվող Պասանաուրի հյուրանոցում։ Վաղ առավոտյան, երբ արթնացան, այ քեզ հրաշք, նույն արջը նստել էր ավտոմեքենայի թափքում և մռթմռթալով շրթունքներն էր լիզում։ Դպրոցականները վազեցին իրենց խաղընկերոջ մոտ։ Այս անգամ հնարավոր չէր մերժել երեխաների խնդրանքը, չէ՞ որ բրդոտը ամբողջ գիշեր կտրել էր հսկայական ճանապարհ, եկել հասել էր իր խաղընկերներին։ Արջը տեղափոխվեց Երևան, նրան բնակություն հաստատելով կենդանաբանական այգում։

Խաղարկու տեսարաններ, համոզիչ ու ճշմարտացի դրվագներ ստեղծելու ճանապարհը կինոյում դյուրին ու հարթ չէ։ Ստեղծագործականի հետ կան նաև այլ դժվարություններ։

«Ո՞ւմ է ժպտում կյանքը». զինվորական ծառայության ավարտից հետո տուն

է դառնում երիտասարդ զինվորը և հանդիպելով իր սիրած աղջկան, փորձում է համբուրել: Քանի որ հարսանեկան ծեսը դեռ չէր տեղի ունեցել, ուստի՝ հարսնացուն ոչ միայն թույլ չի տալիս իրեն համբուրել, այլև ապտակ է հասցընում փեսացուին: Նկարահանման ժամանակ հարսնացուի դերակատար Լիլիթ Հովհաննիսյանը տասնչորս անգամ ապտակ հասցրեց փեսացուին՝ Արմեն Խոստիկյանին: Հաջորդ օրը համբույրի տեսարանը նկարահանելիս կրկնվեց ընդամենը երկու անգամ, քանի որ խաղն արդեն բնական էր:

Հաճախ մինչ նկարահանումները, ֆիլմի նախապատրաստական շրջանում դերակատարները ուսումնասիրում են իրենց կերպավորած հերոսի մասնագիտությունը: Քիչ չեն դեպքերը, երբ գործող անձը ձի նստած սլանում է, մեկ այլ պարագայում՝ մեքենա վարում, ջրում լողում կամ էլ՝ սուսերով մենամարտում:

Կինեմատոգրաֆն, ի տարբերություն թատերական, գեղանկարչական և արվեստի մյուս ձևերի՝ հնարավորություն ունի հանդիսատեսին ներկայացնելու ֆիլմի գործող անձանց հեռու և մոտիկ տարածությունից, որի շնորհիվ դիտողը կարողանում է նպատակահարմար տեսանկյունից «կարդալ» հերոսի դեմքի արտահայտությունը, թափանցել կերպարի ներաշխարհը: Անհրաժեշտության դեպքում ընդհանուր գործողությունից առանձնացված և շեշտված ձևով հանդիսատեսին է ներկայացվում տվյալ հատվածի կարևոր, էական մանրամասները՝ ժայռից կառչած, պրկված բազուկներ, ակնախոռոչներում սարսափահար բիբեր, խորաթափանց հայացք և այլն:

«Մայրը» կինոնկարում Պավելի ընտանիքի ողբերգության՝ հոր մահվան դրամատիկական պահը ընդգծելու համար անհրաժեշտ էր ստեղծել քար լռության դադար: Ինչպե՞ս վարվել, առանց այն էլ կինոնկարը համր էր: Պուդովկինը գտավ համր կինոյին յուրահատուկ, արտահայտիչ ու իմաստալից ռեժիսորական հնարք: Պատից կախված հին ու խարխուլ լվացարանից դանդաղ կուտակվում, ուռչում և ծանր կաթոցով հատակին դրված տաշտի մեջ է ընկնում ջրի կաթիլը՝ որպես լուռ արցունք: Այս փոքրիկ հնարանքը ավելի է սրում դրամատիկական իրավիճակը:

Ռեալիստական երանգներով կյանքը ներկայացնելու մեջ կինոն այնքան պահանջկոտ է ու բծախնդիր, որ հաճախ, ինչպես նշել ենք, դերասանի տարիքը, ինչ-որ չափով արտաքին նկարագիրը պետք է համապատասխանի էկրանային կերպարին: Իհարկե, տգեղացնել, «ծերացնել» հնարավոր է: Հիշենք «Փարիզի աստվածամոր տաճարը» ֆիլմերից մեկի՝ (այն նկարահանվել է մի քանի անգամ) տգեղ ու այլանդակ դեմքով, սապատավոր Քվազիմոդոյի դերակատար գեղեցիկ ու հրապուրիչ արտաքինով, սլացիկ հասակ ունեցող ամերիկյան հանրահայտ դերասան Էլկունիին:

Որպես դերակատարներ՝ ֆիլմերում նկարահանվում են բարուրում գտնվող մանկիկից սկսած մինչև երկար տարիների փորձ ու հմտություն ունեցող տարեց դերասաններ:

Օրըստորե կինոտեխնիկան կատարելագործվում է: Հեռու չէ այն օրը, երբ կինոռեժիսորը և օպերատորը հեռուստացուցային սարքերի օգնությամբ կղեկավարեն կինոֆիլմի նկարահանման պրոցեսները, կգա ժամանակ, որ օպերատորին հարկ չի լինի բարձրանալու երկնաքեր շենքի տանիքը, այնտեղից նկարահանելու քաղաքի ընդհանուր տեսքը: Օպտիկական սարքերի կատարելագործման շնորհիվ հնարավոր կլինի նկարահանել ֆիլմը առանց արհեստական լուսավորության, բնական լույսի տակ, նույնիսկ ամպամած եղանակին: Եթե մի քանի տարի առաջ մի փոքրիկ կայծից կարող է բռնկվել կնոժապավենը, այժմ ստեղծած ժապավենները չեն վախենում կրակից: Այժմ մեծ աշխատանքներ են տարվում «էլեկտրոնային» մեթոդով նկարահանման համար: Էլեկտրոնային կինեմատոգրաֆի ստեղծումը հնարավորություն կտա պատկերները և հնչյունը գրանցել միաժամանակ, այլև չի պահանջվի նկարահանումից հետո լաբորատոր բարդ տեխնոլոգիական աշխատանք, ժապավենը «չի վախենա» լույսից: Կինոարվեստի տեխնիկական ընդլայնման և հարստացման հետ միասին կինոգործիչները մտածում են նոր ստեղծագործական հնարավորություններ ստեղծելու մասին: Կինոստեղծագործ նորարարին հուզում է նաև այն միտքը, թե ինչպես հանդիսատեսը զգա էկրանում պատկերվող ծաղիկների բուրմունքը, զեփյուռի մեղմ շարժումը, շոգը, սառցադաշտի ցրտությունը:




«Միլիտոսյան» ազգանունը տալիս, ինչ խոսք, անմիջապես հիշում ենք ՍՍՀՄ սպորտի վաստակավոր վարպետ, Սովետական Միության և Եվրոպայի չեմպիոն, բազմակի ռեկորդակիր, Մոնրեալի օլիմպիադայի արծաթե մեդալակիր, փառաբանված ծանրորդ Վարդան Միլիտոսյանին: Ընդամենը մի քանի տարի առաջ թվում էր, թե «Միլիտոսյան» ազգանվան շուրջ հյուսված լեգենդը այդքանով էլ ավարտվելու էր, դառնալու էր անցյալ ու հեռավոր հիշողություն:

Սակայն 14-ամյա Իսրայել Միլիտոսյանը ստիպեց մարզաշխարհին նորից հըպարտությամբ կրկնելու այդ ազգանունը, մեկ անգամ ևս վերհիշելու իր մարզիչ-հորեղբորորդու, լենինականցի առաջին օլիմպիական՝ Վարդանի երբեմնի գործած սխրանքը:

Լենինականի Ավ. Իսահակյանի անվան № 26 միջնակարգ դպրոցի 10-րդ դասարանի աշակերտ Իսրայել Միլիտոսյանը, դեռևս 1983 թվականին Տոլյատի քաղաքում անցկացված ծանրամարտի պատանիների համամիութենական առաջնությունում ընդամենը 52 կիլոգրամ քաշային կարգում իրեն ենթարկեց 202,5 կիլոգրամանոց ծանրաձողը (պոկում՝ 90 կգ, հրում՝ 112,5 կգ) և ոչ միայն առաջին մրցանակային տեղը գրավեց, այլև լրացրեց սպորտի վարպետի նորման:

Իսկ մինչ այդ՝ Իսրայելը արդեն հասել էր որոշակի հաջողության. նախորդ տարվա հունվարին նվաճեց մեր հանրապետության կրտսեր տարիքի պատանիների չեմպիոնի պատվավոր տիտղոսը: Եվ ահա հայ ծանրամարտի պատմության մեջ առաջինը Իսրայելին բախտ վիճակվեց այդ տարիքում ոչ միայն դառնալ Հայաստանի ու ՍՍՀՄ պատանեկան չեմպիոն, այլև կրելու ՍՍՀՄ սպորտի վարպետի ծանր ու պարտավորեցնող թիկնոցը:

— Այդ ամենի համար առաջին հերթին պարտական եմ Վարդանին,— խոստովանում է Իսրայելը,— չէ՞ որ նա իմ հոգում ոչ միայն սեր արթնացրեց դեպի սառը և կամակոր ծանրաձողը, այլև դարձավ իմ մարզիչը: Հիշում եմ. հեռուստատեսությամբ, երբ դիտում էի Մոնրեալի

նրա ելույթը, մեջս թաքուն խմորվում էր ծանրամարտիկ դառնալու երազանքը, ուզում էի անպայման նմանվել նրան: Այդ պահերը երբեք չեմ մոռանա:

«Աշխատանք» մարզաընկերության սանըն այսօր նույնպես իր անվանի մարզիչից սովորում է երկաթախաղի գաղտնիքները, կատարելագործում է իր տեխնիկան, հմտանում այդ սպորտաձևի մեջ:

— Վարդանը պարապմունքների ժամանակ սիրում է հաճախ կրկնել այն իմաստուն խոսքը, որ մարզիկը նման է ջրասուզակի, իսկ հաջողությունը՝ մարգարիտի: Պետք է անպայման իջնի ծովի հատակը, որպեսզի ձեռք բերի մարգարիտը,— շարունակում է մեր զրույցը Իսրայելը:

— Իսրայել, հետաքրքիր է իմանալ, ե՞րբ առաջին անգամ զգացիր, որ քո մեջ ապագա ծանրամարտիկն է թաքնված:

— Որքան էլ տարօրինակ թվա, պետք է խոստովանեմ, որ ամեն ինչ սկսվեց այն պահից, երբ դասընկերներիս հետ քաղաքային զբոսայգում ձեռքի զսպանակով փորձեցինք մեր ուժերը,— վերհիշում է Իսրայելը,— միայն ինձ հաջողվեց սլաքը սեղմել մինչև վերջ: Այն ժամանակ սովորում էի 6-րդ դասարանում:

— Իսրայելը արդեն ձեռք է բերել տեխնիկական որոշակի հմտություններ,— ասում է Վարդանը,— աշխատասեր է, խելամիտ, մնում է էլ ավելի խորանա ծանրամարտի հմտությունների ու վարպետության գաղտնիքների մեջ: Հանգամանքներ, որոնց հաղթահարումը յուրաքանչյուր մարզիկի կհասցնի իր երազանքի լուսավոր բարձունքը:

Լենինականի քաղաքային «Արագած» մարզակումբի դահլիճում Իսրայելը մարզվում է, հաղթահարում ծանրամարտի արգելքները ու դժվարությունները: Վարդան Միլիտոսյանի ուշադիր և հետևողական վերաբերմունքի շնորհիվ նա քայլ առ քայլ մոտենում է իր երազանքին: Այդ ճանապարհը դեռևս դժվարին է ու քմահաճ: Այդ է պատճառը, որ այն հաղթահարելու կամքը ու վճռականությունը քչերին է տրված: Իսկ այդ քչերից մեկն էլ Իսրայել Միլիտոսյանն է, մի պատանի, որին, ինչպես խոստովանում են ծանրամարտի գիտակները, մեծ ապագա է սպասվում:

ՍԱՐՈ ԳՅՈԴԱԿՅԱՆ

ՌՈՒԲԵՆ ՏԻՐԱՑՎՅԱՆ

# Խորհրդավոր տխրություն

Ամենաաղքատ մարդն էր այս դարի,
Ապրում էր մենակ, երազներով խենճ,
Մեկ-մեկ հենվում էր իր տնկած ծառին,
Ու սրտի զարկն էր մարում նրա մեջ:

Աղքատը մեռավ աշնանը այն խոր,
Նա չուներ ոչ մայր, ոչ ընկեր, ոչ կին,
Եվ ծառը միակ՝ ծեր հուղարկավոր,
Հոգեհաց տվեց տերևները իր:

ԱՆԴՐԱՆԻԿ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

# Աշուն

Կարմիր-դեղին ելևէջ՝
Տերևների մեջ,
Երկնակամար ամպոտած
Եվ արշալույս թաց:

Մերկ ծառերի անվերջ դող
Եվ արև հանգչող,
Այգիներում խանձված խոտ
Ու թումբեր քարոտ:

Թումբի կողքին մեռնող փուշ,
Աչքերի մեջ հուշ,
Եվ մի ծաղիկ՝ վիզը կախ,
Թերթիկներին՝ վախ:

Լեռան լանջեր ոսկեշոր,
Արցունքն աչքին՝ ձոր,
Իջած գագաթը լեռան
Ամպերի երամ:

Քամու բառաչ, քամու հազ,
Չոր խոտերի նազ,
Ճյուղերի մեջ ոսկեղող
Արեգակի շող:




● — Քանի՞ տարեկան եք,— հարցրեց դատավորը,— հիշեք, որ դուք երդում եք տվել:

— Քսանմեկ տարեկան և մի քանի ամսական,— պատասխանեց կինը:

— Քանի՞ ամսական,— պնդեց դատավորը:

— Հարյուր ութ:

● ՈՐԴԻ.— Հայրիկ, սիրելիս, ո՞վ է դերասանը:

ՀԱՅՐ.— Դերասանը, որդիս, մի մարդ է, որը կարող է քայլել դեպի բեմեզրը, հայացքով զննել կուլիսները, որոնք լի են թատրոնի կահկարասիով, կեղտ ու փոշիով, ուրիշ դերասաններով, բեմի բանվորներով և ասել. «Ի՜նչ հրաշալի տեսարան է այս պատուհանից»:

● ՊՐՈՖԵՍՈՐ.— Թվեք երկու դերանուն:

ՈՒՍԱՆՈՂ.— Ո՞վ, ե՞ս:

ՊՐՈՖԵՍՈՐ.— Ապրե՛ս:

● Մի տիկին, որ վատ էր վարում մեքենան, կանգ առավ խաչմերուկում: Հենց որ վառվեց կանաչ լույսը, մեքենայի շարժիչն անջատվեց: Մինչ նա նորից գործի կգցեր այն, վառվեց կարմիր գույնը: Շտապելուց նա այնպես հուզվեց, որ երբ նորից վառվեց կանաչ լույսը, մեքենայի շարժիչը նորից անջատվեց: Այդ ժամանակ ետևի մեքենաները սկսեցին «աղմըկել»: Մինչ տիկինը սպասում էր, որ երրորդ անգամ կանաչ լույսը վառվի, նրան մոտեցավ հերթապահ ոստիկանը և ժպտալով ասաց. «Սրանք այսօրվա միակ գույներն են, որ վառվում են, տիկին...»:

● Ժպիտը կրճատում է երկու մարդկանց միջև եղած տարածությունը:

● Երևակայությունը տրված է մարդուն փոխհատուցելու այն, ինչ երբեք չի կարողանալու անել, իսկ հումորի զգացումը՝ մխիթարվելու համար այն ամենից, ինչ նա արդեն արել է: Ուրեմն, ժպտացեք:

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Ծովային կաթնասունների և թռչունների համար իսկական աղետ են դարձել պլաստմասսայի այն թափոնները, որոնք լցվում են ծով: Այդ թափոնների նկատմամբ կենդանիները շատ հետաքրքրասեր են. այն ամենը, ինչ հանդիպում է իրենց ճանապարհին, նրանք ուզում են «համտեսել»: Հետևանքը լինում է այն, որ խճճվելով դրանց թելիկների մեջ, կենդանիները սատկում են: Ի՞նչ անել: Ամեն տարի ծովի ջրերում ավելանում են 26000 տոննա պլաստմասսայի թափոններ և 150000 տոննա պլաստմասսայից պատրաստած ձկնորսական հարմարանքներ: Ավելանում են, որովհետև պլաստմասսան ջրում չի լուծվում, չի հալվում, չի ոչնչանում: Գիտնականները գտնում են, որ այդ թափոնները առավել վնասակար են, քան թունավոր պեստիցիդները կամ նավթային շերտերը: Առաջարկվում է արտադրել ինքնաոչնչացող պլաստմասսա: Հատկապես այդ խնդրի վրա է աշխատում «Էկոպլաստիկս» ֆիրման: Այն թողարկում է այսպես կոչված էկոլիտ: Պլաստմասսան, որի մեջ առկա է այդ տարրը, վաթսուն օր հետո արևի ջերմությունից ամբողջապես հալվում, վերանում է:

● «Սևան» ազգային այգու թանգարանի ֆոնդը հարստացավ նոր ցուցանմուշներով, որոնց տարիքը, մասնագետների կարծիքով, համընկնում է 5—4-րդ դդ.

մ. թ. ա.: Գաղտնարանը գտան երեխաները, Դղմաշեն գյուղի մոտ: Ոչ մեծ գըմբեթաձև շինությունից դուրս բերվեցին տարբեր չափերի կճուճներ, երկու թուր, նիզակի ծայրեր, երկաթե մկրատներ, բըրոնզե ապարանջան, գույնզգույն ապակե հուլունքներ և շատ ուրիշ իրեր: Մասնագետները նկարագրեցին և արձանագրեցին բոլոր գտնված իրերը, իսկ վերջնական խոսքը կասեն Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի հնէաբանության և ազգագրության ինստիտուտի աշխատակիցները:

Այսօր, նույնիսկ 20-րդ դարի վերջին, անծայրածիր ամազոնյան ջունգլիները մեզնից բազմաթիվ գաղտնիքներ և հանելուկներ են թաքցնում: Բրազիլացի ազգագրագետների մոտ մեծ հետաքրքրություն առաջացրեց Ազգային հնդկական ֆոնդի հայտարարությունն այն մասին, որ Ամազոնիայի կենտրոնական մասում հայտնաբերվել են առաջներում անհայտ երկու ցեղ:

Կառավարական կազմակերպության մասնագետները հեռարշավի ժամանակ անսպասելիորեն հայտնաբերեցին հընդկացիների մի ոչ մեծ խումբ: Բնակիչները մերկ էին, տղամարդկանց մարմինը ծածկված էր միայն մարտական նախշերով, ձեռքերին՝ կացին, նետ ու աղեղ: Հնդկացիները շարժումներով հասկացրին, որ գիտնականները չմոտենան իրենց: Մեկ ժամից ավելի երկու խմբերը լուռ, անշարժ կանգնած էին: Հետո հնդկացիները, ինչպես որ հանկարծ հայտնվել էին, այդպես էլ անհետացան: Գիտնականների կարծիքով, նման մարտական նախշեր չունի ամազոնյան հնդկացիների ոչ մի ցեղ: Դա թույլ է տալիս մասնագետներին պնդելու, որ իրենք հանդիպել են մինչև այժմ անհայտ ցեղի:

Ինչպես հայտնեց Ազգային հնդկական ֆոնդը, ավելի վաղ, մոտավորապես Ամազոնիայի նույն շրջանում, գիտնականները հայտնաբերել էին իրենց անհայտ ևս մի ցեղ:

## «ՊԻՈՆԵՐ» № 6-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

1. «Սոյուզ»: 2. Լուսին: 3. Միցար: 4. Բոլիդ: 5. Դիոնե: 6. Ռեմեկ: 7. Ֆոբոս: 8. Երկիր 9. Կլիմուկ: 10. Արկտուր: 11. Օձակիր: 12. Օլդրին: 13. Դյումին: 14. «Կոսմոս»: 15. Կաստոր: 16. Կարկին:


# ՊԻՈՆԵՐ



ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից


## Այս համարում 7. 88




Հանձնված է արտադրության 22.04.88 թ.: Ստորագրված է տպագրության 3.06.88 թ.: Թուղթ օֆսեթ, $70\times100^{1}/_{61}$: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,292 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 66232: Պատվեր՝ 780: Գինը՝ 15 կոպեկ:

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 22.04.88 г. Подписано к печати 3.06.88 г. Формат $70\times100^{1}/_{16}$. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа. 3,0 уч.-изд. листа. Тираж 66232. Заказ 780. Цена 15 коп.

Намечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

**ԵՂԻՇԵ ԹԱԴԵՎՈՍՅԱՆ. «ԻՄ ԱՆՈՒՐՋՆԵՐԻՑ ՄԻ;ԿԸ» 1905 Թ. (1870—1936 ԹԹ.)**

**ԵՂԻՇԵ ԹԱԴԵՎՈՍՅԱՆ. «ՀԱՆՃԱՐՆ ՈՒ ԱՄԲՈԽԸ» 1909 Թ.**


**Գլխավոր խմբագիր՝ ՊԵՐՃ ԶԵՅԹՈՒՆՅԱՆ**

Խմբագրական կոլեգիա՝ ԴԵՎՐԻԿՅԱՆ Գ., ԽԱՆՋՅԱՆ Գ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՅՈՒՅԱՆ Լ., ՇԵԿՈՅԱՆ Ա., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՐԳՍՅԱՆ Դ., ՍԻՄՈՆՅԱՆ Կ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՏՈՆՈՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՔԵԶՕՂԼՅԱՆ Մ. (գեղարվեստական խմբագիր):

Տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Շ., սրբագրիչ՝ ԳԵՎՈՐԳՅԱՆ Գ.:

ԳԻՆԸ 15 ԿՈՊ. ԻՆԴԵՔՍ 77806